## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված . Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

5

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.

ՄԱՅԻՍ 1977

ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Лениньян угнов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգությունից*

*Վ. Ի. Լենինի ճառը՝ նվիրված Յա. Մ. Սվերդլովի հիշատակին* . . . 3

*Ինֆորմացիոն հաղորդագրություն ՀԿԿ Կենտկոմի պլենումի մասին* . . 10

*Ընկեր Կ. Ս. Դեմիրճյանի զեկուցումը* . . . . . . . . 11

ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 60-ԱՄՅԱԿԸ

*Պ. Գ. ՍԱՖՅԱՆ.— Զարգացնենք սովետական ապրելակերպը* . . . 42

*ԽԱՉԱՏՈՒՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ— Լոռվա ձորի հրաշքը* . . . . . 50

ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

*Ա. ԼԱՇԻՆ— Համաժողովրդական պետությունը և բանվոր դասակարգի առաջատար դերը սովետական հասարակարգում* . . . . . 58

ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ— Մեծ քաղաքացին, գրողը և մտածողը* . . . . 68

ՄԱՐԴԸ ԵՎ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

*Ի. Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ— Անտառը համաժողովրդական բարիք է* . . . 77

ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

*Ա. Ա. ԿԱՐՁՄԻՏ— Ջերմորեն սիրենք մեր հայրենիքը* . . . . . 84

ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ս. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ— Արժեքավոր ուսումնասիրություն* . . . . 92

## СОДЕРЖАНИЕ


Из идейного наследия В. И. Ленина

Речь В. И. Ленина, посвященная памяти Я. М. Свердлова . 3

Информационное сообщение о пленуме ЦК КП Армении . 10

Доклад товарища К. С. Демирчяна . . . . . . 11

**К 60-летию Великого Октября**

**П. Г. Сафян** — За советский образ жизни . . . . 42

**Хачатур Оганесян** — Чудо Лорийского ущелья . . . 50

**Проблемные теоретические семинары**

**А. Лашин** — Общенародное государство и ведущая роль рабочего класса в советском обществе . . . . . 58

**Знаменательные даты**

**Оганес Казарян** — Великий гражданин, писатель и мыслитель 68

**Человек и природа**

**И. А. Даниелян** — Лес — общенародное добро . . . 77

**Проблемы воспитания нового человека**

**А. А. Карчмит** — Сердечно любить нашу Родину . . 84

**Критика и библиография**

**В. С. Неркарарян** — Ценное исследование . . . . 92








# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԻՑ

Վ. Ի. Լենինի գաղափարական ժառանգության մեջ մեծ տեղ են գրավում կապիտալիզմը տապալելու և նոր տնտեսական ու հասարակական կարգ ստեղծելու համար մասսաներին պայքարի կազմակերպելու պրոբլեմները:

Այդ գաղափարները մեծ ուժով բացահայտվում են նաև Վ. Ի. Լենինի՝ հրապարակվող ճառում: Ճառը արտասանվել է 1920 թվականի մարտի 16-ին Մեծ թատրոնում՝ պրոֆեսիոնալ հեղափոխական, կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ Յա. Մ. Սվերդլովի մահվան առաջին տարեդարձին նվիրված սգո հանդիսավոր նիստում:

Վ. Ի. Լենինը Յա. Մ. Սվերդլովին բնութագրել է որպես խոշորագույն կազմակերպիչներից մեկի, որն իր ողջ գիտակցական կյանքը նվիրաբերել է հանուն պրոլետարական հեղափոխության հաղթանակի, սոցիալիզմի համար մղվող պայքարին:

Այդ ճառում Վ. Ի. Լենինն ընդհանրացրել է նոր, իսկական դեմոկրատական իշխանության՝ սովետների իշխանության երկամյա փորձը: Նա ցույց է տվել, որ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ մեր երկրում հաստատված պրոլետարիատի դիկտատուրան համախմբեց բանվորներին և գյուղացիներին, հաջողություններ ապահովեց ինչպես ռազմաճակատներում, այնպես էլ սոցիալիստական շինարարությունում, աշխատավորների զանգվածներին ներգրավեց նոր հասարակարգի ակտիվ ստեղծման մեջ:

Վ. Ի. Լենինը ջերմությամբ է խոսում կուսակցության դաստիարակած կազմակերպիչների կոհորտայի մասին, որոնց նշանակությունն առանձնապես մեծ է սոցիալիստական շինարարության ժամանակաշրջանում: Նա խնդիր է դնում՝ աշխատավորական զանգվածների շրջանում գտնել կազմակերպչական նոր տաղանդներ, «բանվորներից և գյուղացիներից դաստիարակել բոլոր նրանց, ովքեր ունակ են լինելու կազմակերպիչներ և ադմինիստրատորներ», ճիշտ տեղաբաշխել նրանց սոցիալիզմի շինարարության զանազան տեղամասերում:

Վ. Ի. Լենինի ճառի մասին համառոտ լրագրական հաշվետվությունը հրապարակվել էր «Պրավդա»-ում 1920 թվականի մարտի 17-ին (տե՛ս Երկերի լիակ. ժող., հ. 40, էջ 225) *: Ճառը առաջին անգամ լրիվ հրապարակվում է ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի կենտրոնական կուսակցական արխիվում պահվող սղագրությունից:

Փաստաթուղթը նախապատրաստվել է լենինյան XXXIX ժողովածուում հրապարակվելու համար:

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԱՌԸՆԹԵՐ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՃԱՌԸ՝ ՆՎԻՐՎԱԾ ՅԱ. Մ. ՍՎԵՐԴԼՈՎԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

## 1920 թվականի մարտի 16

Ընկերներ, մենք հավաքվել ենք այսօր, Յակով Միխայլովիչ Սվերդլովի մահվան օրը, և անձնական այն հիշողություններով հանդերձ, որ ունեն շատ ու շատ հին կուսակցական աշխատողներ, և բոլորի մոտ առաջին տեղն է բռնում այն խոշորագույն տաղանդի գնահատման միտքը, որին մենք կորցրե-

* Հայերեն՝ Երկեր, հ. 30, էջ 554։

ցինք և որին փոխարինել չհաջողվեց և, հավանաբար, երկար ժամանակ չի հաջողվի այդ անել: Երբ խորը մտածում ես այդ կորստի նշանակության մասին, ապա միտքդ ակամա ուղղվում է կազմակերպման հարցին, ընդհանրապես կազմակերպման նշանակությանը և այնպիսի ականավոր կազմակերպիչների դերին, որոնց թիվն առանձնապես ու առանձնապես քիչ է և որոնց կյանքի ու գործունեության օրինակը պետք է ուսանելի լինի մեզ համար և որպես պարզաբանում ընդհանրապես կազմակերպման նշանակության նկատմամբ մեր հայացքի և լինի գործնական դաս, խրատ, օրինակ կազմակերպչական այն գործունեության, որ մենք շարունակում ենք, որը կազմում է և պետք է կազմի բանվոր դասակարգի կուսակցության գործունեության գլխավոր բովանդակությունը, իսկ կոմունիստական հեղափոխության պահին, առանձնապես նրա առաջին քայլերի ընթացքում, անկասկած, դա մեր գլխավոր գործունեությունն է:

Եվ իրոք, բանվոր դասակարգի գլխավոր զենքը թե՛ հեղափոխության նախապատրաստման նրա երկարատև պատմության մեջ, թե՛ հեղափոխության առաջին շրջանում, անկասկած, կազմակերպումն է: Եթե կապիտալիստների կողմից փոշիացված ու ճզմված աշխատավորների մասսաներից չառանձնանար այնպիսի մի դասակարգ, որը սովորում է կազմակերպում, ինքն է կառուցում այդ խոշոր արդյունաբերությունը, քաղաքային կյանքը, ողջ սոցիալիստական կուլտուրան ու քաղաքակրթությունը, այն ժամանակ աշխատավորների առաջավոր ջոկատներն ի վիճակի չէին լինի իրականացնել կապիտալիզմի այն խորտակումը, նոր, սոցիալիստական հասարակարգի կազմակերպման գործի այն պրակտիկ ձեռնարկումը, որն այժմ, երկամյա փորձից հետո, առանձնապես պարզ է մեզ համար: Եթե մենք մի ընդհանուր հայացք նետենք այն բանի վրա, թե ինչպիսին էր և այժմ որպիսին է գլխավոր հասարակական ուժերի ու բնակչության գլխավոր մասսայի հարաբերակցությունը մեր հեղափոխության մեջ, ապա մենք միանգամից կտեսնենք, որ պրոլետարիատի դիկտատուրան, որը երկու տարում չտեսնված ծանր ու դժվարին պայմաններում իսկական հրաշքներ գործեց Ռուսաստանում, որ այդ դիկտատուրան միանգամայն անհնարին ու ներքուստ անիմաստ կլիներ, եթե նրա գլխավոր շարժիչ ուժը չլիներ աշխատավորների համախմբումը, հենց այնպիսի համախմբումը, որն ի վիճակի է իր կողմը գրավելու աշխատավոր բնակչության վիթխարի մեծամասնությանը:

Մեր հեղափոխության փորձից մենք գիտենք, որ մասնավոր սեփականության տիրապետության պայմաններում ոչ թե ընտրական կամպանիաներով կարող է տեղի ունենալ աշխատավորների միավորումը, որ և՛ կալվածատերերի, և՛ բուրժուազիայի տապալման համար մղվող պայքարում միայն կարող է այդ միավորումը դառնալ բարձրագույն ուժ: Եվ հիմա մենք պարզ տեսնում ենք, որ վիթխարի զանգվածների, հատկապես թե՛ խավարից, թե՛ կապիտալիստական ճնշումից ճզմված, ոչ միայն մեզ մոտ, այլև բոլոր մեծ երկրներում էլ քաղաքային բնակչությունից ետ մնացած տասնյակ միլիոնավոր փոշիացած գյուղացիության միավորումն անհնարին կլիներ իրականացնել առանց մանր սեփականատերերի՝ կապիտալիզմը վերածնելու փորձերի ու ձգտման դեմ պայքարելու համար աշխատավորներին համախմբելու, իսկ այդ փորձերն ու ձգտումներն անխուսափելիորեն հատուկ են մանր գյուղացիներին, դրանցից պոկվել չի կարելի: Եթե չլիներ պրոլետարիատի կազմակերպումը, այդպիսի բան սոցիալական տեսակետից անհնարին կլիներ, իսկ պրոլետարիատի կազմակերպումը նշանակում է այն աշխատավորների միավորում, որոնք գյուղացիական ամբողջ մասսայից իրենց կողմն են գրավում այն ամենը, ինչ նրա մեջ աշխատավորական է, իսկ նշանակում է վիթխարի մեծամասնությանը, համախմբում են աշխատանքի մարդկանց և դրանով իսկ հանդես գալիս սեփականատերերի ամեն մի համախմբման ու կազմակերպման դեմ: Մենք լավ գիտենք, գյուղացիները կազմում են բնակչության հսկայական մեծամասնությունը և կիսով չափ սեփականատերեր են, կիսով չափ՝ աշխատավորներ: Եվ



եթե չլիներ կազմակերպված պրոլետարիատը, որը, ընկերներ, համախմբեց բոլորին, ցույց տվեց, որ մասնավոր սեփականությունը վերականգնելու փորձի դեմ մղած պայքարում պրոլետարիատը անդրդվելի է, որ նա կարող է ծանր զոհեր մատուցել, և եթե չլիներ պրոլետարների ամենասերտ կապն աշխատավոր գյուղացիության հետ, եթե չլիներ տասնյակ միլիոնավոր գյուղացիների փորձը, որոնք տեսել են, որ կալվածատերերի և կապիտալիստների նույնիսկ ամենադեմոկրատական և հանրապետական պետությունը կապիտալիզմի պետությունն է, եթե չլիներ այդ փորձը, որը երբեմն ամենածանր փորձությունների միջոցով գյուղացիներին ցույց է տալիս, որ նրանք կարող են գնալ միայն պրոլետարիատի ետևից, եթե չլիներ այդ փորձը, այն գործը, որ մենք հիմա անում ենք, որը նախապատրաստվում է բոլոր երկրներում, սոցիալիստական հեղափոխության գործը անհնարին կլիներ:

Երբ խոսում են պրոլետարիատի դիկտատուրայի մասին, շատ հաճախ մոռանում են, որ այն աշխատավորների համախմբվածությունը, որոնք վճռականորեն կապերը խզել են կապիտալիստական աշխարհից և միաժամանակ այդ նույն կապիտալիստներից էլ սովորել են համախմբված կազմակերպում, մղել են գործադուլների ու ցույցերի երկարատև պայքար,— առանց դրան պրոլետարիատի դիկտատուրան անհնարին կլիներ: Առանց այն կապի, որ կազմակերպված պրոլետարիատն ունի տասնյակ միլիոնավոր աշխատավորների հետ, առանց այն հարգանքի, որ ամեն մի աշխատավոր մարդու ներշնչում է հին հասարակարգը խորտակող պրոլետարիատի անձնազոհ պայքարը, առանց այն աննախընթաց մեծ ազդեցության, որ ձեռք են բերել պրոլետարիատն ու նրա ղեկավար կուսակցությունը, հեղափոխություն լինել չէր կարող:

Ռազմական հաջողությունները մեզ համար գրավական են այն բանի, որ մենք կլուծենք ռազմական խնդիրներից ավելի դժվարին խնդիրներ, տնտեսական շինարարության, ավերված երկրի վերականգնման խնդիրները, դրանք միակ գրավականն ու հիմքն են այն բանի, որ պրոլետարիատն իր ուժով՝ որպես կազմակերպման ուժով գիտակցել է, որ պրոլետարիատի առաջավոր ջոկատը, կազմակերպված ավանգարդը, հարյուր հազար անգամ ավելի ուժեղ է, քան նրա անմիջական թիվը, որը նրան կապել է տասնյակ միլիոնների հետ: Եվ այստեղ, երբ մենք խորհրդածում ենք այդ թեմաների մասին, մեզ համար առանձնապես պարզ է դառնում կամ պետք է պարզ դառնա, կամ, գոնե, մեր խորհրդածությունը պետք է ուղղվի դեպի խոշոր կազմակերպիչների նշանակությունն ու դերը: Մենք գիտենք, որ միլիոնների կազմակերպման համար անսահմանորեն մեծ է ղեկավարի, պրակտիկ կազմակերպչի նշանակությունը: Մենք գիտենք, որ մենք, ողջ բանվոր դասակարգն ստիպված է եղել և ստիպված է կազմակերպման այդ գործին ձեռնամուխ լինել չնչին քանակի իրոք ականավոր կազմակերպիչներով: Այս տեսակետից էլ Յակով Միխայլովիչ Սվերդլովի կյանքի ու գործունեության պատմությունը հատկապես ուսանելի է, այն հատկապես ակնբախ կերպով ցույց է տալիս մեզ, թե ինչպիսի պայմաններում ականավոր կազմակերպչական տաղանդները, որոնց թիվը այնքան քիչ է, ինչպիսի պայմաններում են ձևավորվել, ինչպես են նրանք կոփվել, ինչպես դարձել խոշորագույն կազմակերպչական ուժեր:

Գուցե, իր կարճատև կյանքի կեսը Յակով Միխայլովիչ Սվերդլովը անցկացրել է որպես առավելապես անլեգալ կազմակերպության պրակտիկ աշխատող: 17—18 տարեկան նա արդեն բանտ էր ընկել ու սկսել աշխատել որպես բանվորական կազմակերպությունների գործիչ, սկսել է մասնակցել հեղափոխական պայքարին և իր ու իր ընտանիքի՝ արհեստավորի ընտանիքի անցյալից անցավ ու ամբողջովին կլանվեց բանվոր դասակարգի խնդիրներով, նրա կազմակերպության գործունեությամբ, որը նրան հնարավորություն տվեց իսկապես ծավալվել: Գուցե, ոչ ոք արհեստավորների ու բանվոր դասակարգի միջավայրից ելած այն տասնյակ, հարյուրավոր և, գուցե, հազարավոր հեղափոխականների գործունեության ու աշխատանքի այդպիսի տիպիկ ներկայացուցիչ չէ,— նրանց մի չնչին թիվը պատկանում էր մտավորականությանը,— որոնք դեռ ցարիզմի օրով, ավելի քան տասը տարի շարունակ իրենցից նա-

խապատրաստում էին մասսաներին ղեկավարելու ունակ հեղափոխականներ: Այդ երկարատև գործունեության ընթացքում Յակով Միխայլովիչին չվիճակվեց լինել արտասահմանում, դա նրան հնարավորություն էր տալիս չկորցնել կապը շարժման պրակտիկ առումով: Եվ թեպետ կուսակցական աշխատանքի մեջ անցկացրած իր ողջ կարճատև կյանքի այն 17—18 տարիների մեծ մասը գտնվել է բանտում և աքսորում, բայց հենց այդտեղ է, որ դրսևորվել է նրա կազմակերպչական տաղանդը: Նա կարողացել է իրեն ամբողջովին նվիրել աշխատանքին, մարդկանց զննելուն, նրանց հատկությունները ճանաչելու հմտությանը, ամեն մեկին իր տեղը դնելու հմտությանը,—հմտություն, որը հանդիսանում է կազմակերպչի գլխավոր տաղանդը: Եվ որ ուշագրավ է, այդ հմտությունը վիճակվել էր մշակելու մի մարդու, որն իրեն նվիրել էր անլեգալ գործունեությանը, որտեղ, բնականաբար, շատ նեղ է այն մարդկանց անմիջական շրջանը, որոնց հետ շփվում է անլեգալ աշխատողը: Մեզնից ամեն ոք, ով իր ետևում ունի բավական թվով տարիների անլեգալ աշխատանք, ամեն ոք, ով ճանաչել է հարյուրավոր հեղափոխականների, կասի իրեն, որ նրանցից աննշան թիվը միայն, որոնց կարելի է հաշվել մի ձեռքի մատների վրա, եղել են այնպիսի կազմակերպիչներ, որոնք կարողացել են անլեգալ խմբակներում մշտական շփման այդ փորձից, ընդհատակից ձեռք բերել մարդկանց ընդհանուր ճանաչում, այնպիսի կազմակերպչի ու ադմինիստրատորի հմտություն, որն ունակ լիներ այդ ամենը փոխադրել հարյուր հազարավորների գործունեության վրա, միլիոնների միջև եղած հարաբերությունների վրա: Այստեղ կուսակցությանը սպասում էր չլսված դժվարին անցում: Կուսակցությունը, որը դաստիարակել է լավագույն ներկայացուցիչներին, ինչպիսին է Յա. Մ. Սվերդլովը, չէր կարող այլ կերպ դաստիարակել, քան անլեգալ գործունեությամբ, ընդհատակում, խմբակներում: Կուսակցությանը վիճակվեց մի քանի շաբաթվա ընթացքում, ամենաշատը մի քանի ամսվա ընթացքում, դառնալ կառավարական կուսակցություն, որը պետք է ղեկավարեր կամ որի վրա խնդիր էր դրվել ղեկավարել միլիոնավոր պրոլետարներին այնպես, որ նրանք իրենց ամբողջ գործունեությունը հիմնեն տասնյակ միլիոնավոր աշխատավորների հետ ունեցած անխզելի կապի վրա, այնպիսի կապի, որը ձևական չլինի, ինչպես առաջ էր, այլ այնպիսի կապի, որն արթնացներ աշխատավորներին, որը յուրաքանչյուր բանվորի, որտեղ էլ որ նա ապրի, ուր էլ որ ընկնի, ինքնին դարձներ ագիտատոր, պրոպագանդիստ, կազմակերպիչ, ինքնին ստեղծեր այնպիսի դրություն, որ թեկուզ առավել հետամնաց, առավել տրորված գյուղացու առջև ամեն մի բանվոր լինի որպես ղեկավար, առաջնորդ, ինչպես նա, ով նրան տարել է իր ետևից, ով գյուղացուն ցույց է տվել շահագործողների դեմ, կալվածատերերի, կապիտալիստների դեմ պայքարի օրինակ, ամենամեծ անձնազոհության օրինակ: Այն անձնազոհությունը, որը դրսևորվել է հին հեղափոխական աշխատողների գործունեության մեջ, օրինակ է տվել, որ մենք այնքան ակնառու կերպով տեսնում ենք Յակով Միխայլովիչի կյանքում, որն իր կյանքի 35 տարվա կեսը անցկացրել է անլեգալ աշխատանքում և երկար տարիներ, հավանաբար, այդ կյանքի կեսից ավելին անցկացրել է բանտերում, անլեգալ դրության մեջ դես ու դեն ընկնելով: Այդ անձնազոհությունը, որն առանձնացրեց արհեստավորների լավագույն և սակավաթիվ ներկայացուցիչների և աննշան թվով բանվորների, պրոլետարիատը պետք է կրկներ մեծ մասշտաբով:

Երբ խոսում են պրոլետարիատի դիկտատուրայի մասին, հաճախ մոռանում են, որ այդ դիկտատուրան ապացուցվել էր գործով՝ ամենամեծ զոհերի դիմելու պատրաստակամությամբ, վճռականությամբ: Երբ պրոլետարիատի դիկտատուրային մեղադրում են նրա գործադրած բռնության համար, մոռանում են, որ այդ բռնությունը ուղղված էր շահագործողների դեմ, կալվածատերերի և կապիտալիստների դեմ, մոռանում են, որ այն հարգանքը, լիակատար նվիրվածությունը, որ պրոլետարիատը ձեռք է բերել աշխատավորների շրջանում, նա ձեռք է բերել միայն այն բանով, որ ամենուրեք նրա առաջավոր ջոկատները հեղափոխության անցած երկու տարիների ընթացքում հեղափոխության ամեն տեսակ աղետների ավելի մեծ մասը, սովի ծանրությունը, այն անլուր դժվարությունների բեռը, որ մեզ պատճառեց քաղաքացիական պատերազմը, այն դժվարությունների բեռը, որոնք գլխավորապես բաժին ընկան քաղաքների բնակչությանը:



Ամենաանխզելի կապ կա մի կողմից այն հին հեղափոխականների անձնազոհության, որոնք մեր հեղափոխությունից ավելի քան տասը տարի առաջ կոփում էին իրենց հմուտ գործունեությունն ու կազմակերպչական հմտությունը, կուսակցության կորիզը, որն ընդունակ է ղեկավարելու պրոլետարիատին, և այն անձնազոհության միջև, որ եղել է երկու տարվա ընթացքում գյուղացիության մեջ պրոլետարիատի նվաճած հեղինակության և հարգանքի գլխավոր տարբերիչ գիծն ու ամենակարևոր աղբյուրը: Այդ անձնազոհությունը ցույց է տալիս, որ այս հեղափոխությունը չէր կարողանա անցնել այնպես, ինչպես անցավ, չէր կարողանա դիմանալ երկու տարվա չլսված ծանր փորձություններին, եթե այնպիսի մարդիկ, ինչպիսին է Յակով Միխայլովիչ Սվերդլովը, հեղափոխությունն սկսվելուց ավելի քան տասը տարի առաջ չարմատավորեին համախմբման, աննկուն ամուր կազմակերպության սաղմերը և առանց որոնց այդ կազմակերպչական տաղանդը, ադմինիստրատորի կարողությունը կապված չէին լինի այն դասակարգի գործունեության հետ, որին բավականաչափ վարժեցրել է կապիտալիզմը, որը բավականաչափ միավորված է, համախմբված, բավականաչափ արթնացած հին նիրհից, որպեսզի իր վրա վերցնի այդ գործի շարունակումը, որպեսզի նախապատրաստի միլիոնավոր մարտիկներ ու ռազմիկներ, որպեսզի առաջնորդի նրանց, չնայած այն բոլոր դժվարություններին, որ մեզ վրա է դրել պատմությունը:

Կասկած չկա, որ ավելի առաջավոր կազմակերպչական ավանդույթներ ունեցող երկրներում հեղափոխության առաջին հաղթանակներից հետո ավելի հեշտ կանցնեն ամենադժվարին կազմակերպական փուլերը: Բայց հեղափոխության առաջին քայլերն այդ երկրներում դժվարանում են, ի միջի այլոց, այն պատճառով, որ հեղափոխականների և բանվոր դասակարգի ավանգարդի համար մյուս երկրներում չի եղել այնպիսի ծանր կոփող դպրոց, ինչպիսին եղել է մեր դպրոցը, և որ այնտեղ հարկ է լինում ծանր, ավելի զոհեր պահանջող հեղափոխության անցնել կապիտալիզմից, համեմատաբար խաղաղ ժամանակաշրջանից, որը դաստիարակում էր ոչ թե հեղափոխական մարտիկների՝ որպես բանվոր դասակարգի ղեկավարների, այլ օպորտունիստական «մարտիկների»:

Այս հետևությունը, ի միջի այլոց, մեզ պարտադրում է մեր հեղափոխության համեմատումը գերմանականի հետ[1]: Նմանությունն ապշեցուցիչ է: Եթե մենք հիշենք, որ մեզ մոտ գործն սկսվել է հաշտվողականությունից, որ այն հանգեցրել է կոռնիլովշչինային և այժմ գերմանական պրոլետարիատը ապրում է այդ նույն կոռնիլովշչինան[2]: Այսօր մենք հաղորդագրություն ստացանք, որ գերմանական միապետականների նոր կառավարությունը, որը տապալեց հին միապետականներին, արդեն համաձայնություն է կնքում հին կառավարության հետ և վերականգնում է միապետականության իշխանությունը գերմանական մենշևիկների, էսէռների և շայդեմանականների հետ[3]:

Մեզ ասում են, որ մյուս բլեռում,— դա դեռևս պարզ չէ, բայց, հավանաբար, այդ բլեռը կա,— այնտեղ արդեն կազմվում է բլոկ, որն իր միակ գլխավոր խնդիրն է համարում պրոլետարիատի դիկտատուրան և որը օգտվում է գերմանական կոռնիլովշչինայից, այն փորձից, որ այդ կոռնիլովշչինան թողել է մասսաների մեջ, օգտվում է ճիշտ այնպես, ինչպես ռուսական հեղափոխության մեջ օգտագործվեց Կոռնիլովի ավանտյուրան, որը Հոկտեմբերյան հեղափոխության նախադուռը հանդիսացավ: Պրոլետարիատի կազմակերպիչները, առաջնորդները, երկարատև հեղափոխական պայքարում կոփված մարդիկ հենց հիմա առանձնապես մեծ թվով պետք են գալու գերմանական պրոլետարիատին: Եվ որքան էլ մեծ լինի բանվոր դասակարգի մեծ կուլտուրայի, մեծ դաստիարակվածության, կազմակերպվածության նշանակությունը, իսկ

Յակով Միխայլովիչ Սվերդլովի նման առաջնորդների պակասը, որոնք տասը-տասնհինգ տարի դաստիարակվել են կազմակերպչական աշխատանքում, որը նվիրված է ամբողջովին հեղափոխության նախապատրաստմանը և այն ամեն կերպ խուզելու դեմ մղվող պայքարին, մենք կարող ենք ասել, նայելով Հունգարիայի փորձին[4], որ երբեմն այդ պակասը կարող է արտահայտվել պրոլետարիատի անհամար զոհերով, այն հեղափոխությունը չի կանգնեցնի, բայց զոհերի ու տառապանքների թիվը մեծացնել կարող է։

Եվ հատկապես այժմ, ընդհանուր հայացք նետելով մեր ապրած հեղափոխության վրա և այն համեմատելով ուրիշ երկրների հեղափոխության ընթացքի հետ, խորը մտածելով այն կազմակերպման նշանակության մասին, որն այդ բնագավառի մեր ղեկավարներից առաջ քաշեց մի խոշորագույն տաղանդ՝ Յակով Միխայլովիչ Սվերդլովին, մենք պետք է մեզ հաստատ երդում տանք, որ ավելի ու ավելի շատ ուշադրություն կդարձնենք գործի այդ կողմին։ Եթե ռազմական գործունեության մեջ, որը երկու տարի շարունակ իրադարձությունների ընթացքով մեզ մոտ դրվում էր և չէր կարող չդրվել առաջին տեղը, եթե ռազմական գործունեության մեջ դեռ շատ բան կարելի է անել պոռթկումով, խանդավառությամբ, կարճատև գրոհով, ապա տնտեսականշինարարական, գերազանցապես կազմակերպչական գործունեության մեջ ոչինչ չի կարելի անել միայն պոռթկումով, գրոհով, խանդավառությամբ։ Միայն ամենատևական, երկար տարիների համար նախատեսված կազմակերպչական աշխատանքը կարող է այստեղ իսկական հաղթանակի հասցնել մեզ։ Եվ այդ աշխատանքում, իհարկե, սովետական իշխանության տասնյակ, հարյուր հազարավոր կառուցողներ պետք է իրենց առջև ունենան հեղափոխության ականավոր գործիչների և նրա ղեկավարների պատմությունը, նրանց անձնական փորձը, հիշողությունն այն մասին, թե կազմակերպչական տաղանդներն իրենց համար ինչպես էին ճանապարհ հարթում։

Մենք գիտակցում ենք, թե հիմա մեզ մոտ որքան աննշան է կազմակերպչական, ադմինիստրատիվ տաղանդների թիվը, նրանք մեզ բաժին են մնացել հին հասարակությունից, կապված են գերազանցապես այդ հասարակության նախապաշարմունքների հետ, անխտիր կիսաթշնամական են, և մենք պետք է նրանց օգտագործենք, քանի որ մեր դասակարգից կազմակերպիչների թիվը արագ մեծացնել մենք չենք կարող, և գլխավոր գործունեությունը պետք է լինի այն, որ բանվորներից և գյուղացիներից դաստիարակենք բոլոր նրանց, ովքեր ունակ են կազմակերպիչներ և ադմինիստրատորներ լինելու։ Աշխատավորների այդ միջավայրում, որոնք երբեք իրենց կյանքը չեն անցկացրել ընդհատակի արհեստական իրադրության մեջ, կտրված են մասսաներից, որոնք անհամեմատ ավելի շուտ են հասկանում մարդկանց հարաբերությունները այդ միջավայրում և անկուսակցական բանվորների ու գյուղացիների միջավայրում, անչափ ավելի շատ կան կազմակերպչական տաղանդներ, քան ուրիշ որևէ այլ դասակարգի մեջ։ Բայց մենք չենք կարող այդ տաղանդները գտնել, մենք չենք կարող սովորել նրանց դնել իսկական տեղը, դնել այնպիսի դրության մեջ, որ նրանք սովորեն ուղղություն տալ մարդկանց և դնել նրանց իսկական տեղը, միավորել տասնյակ հազարավոր մարդկանց, որպեսզի նրանց գործողության, աշխատանքի արդյունքը գնահատենք միլիոնների կարիքների ու շահերի պահանջմունքների տեսակետից,— դա մեր գլխավոր խնդիրն է։

Այլ կերպ, քան ուշադիր խորհրդածելով անցյալի ականավոր կազմակերպիչների գործունեության մասին, այլ կերպ, քան մեր երկարամյա գործունեությունը նվիրելով համառ ու համբերատար աշխատանքի, մենք այդ խնդիրը չենք լուծի։ Բայց, հիշելով Յա. Մ. Սվերդլովին, խորհրդածելով այն մասին, թե ինչպիսի պայմաններում այն ժամանակ, երբ բանվոր դասակարգի առաջավոր ղեկավարներն ստիպված էին լինում տասնյակ տարիներ թաքնըված լինել ընդհատակում, եթե նույնիսկ այն ժամանակ առաջ էին քաշում մարդկանց, որոնք ընդունակ էին ընդհատակի կազմակերպիչների գործունեությունը չտեսնված արագությամբ ու հաջողությամբ տարածել միլիոնների գործունեության վրա, ապա այժմ անհամեմատ ավելի մեծ արագությամբ ու արդյունքներով կհասնենք այն բանին, որ բանվոր դասակարգի գիտակից ղեկավարների թիվը, մեծ օրինակի հետքերով ընթացող կազմակերպիչների թիվը դառնա իրոք մասսա, և այն ժամանակ մեր հեղափոխության դժվարագույն տնտեսական ու կազմակերպչական խնդիրը հաջողությամբ կլուծվեր։ Այդ բանում մեզ վստահություն են տալիս խորհրդածություններն այն մասին, թե ինչ ենք ապրել մենք, և ինչ գնով էլ լինի այդ բանին հասնելու վճռականությամբ էլ մենք բոլորս կհեռանանք այս ժողովից։



ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ.

*1 Նկատի է առնվում 1918 թվականի նոյեմբերյան հեղափոխությունը Գերմանիայում։*

*2 Խոսքը կապպական պուտչի մասին է՝ 1920 թվականի մարտին հակահեղափոխական հեղաշրջում կազմակերպելու՝ գերմանական միապետականների փորձի մասին։*

*3 Շայդեման, Ֆիլիպ (1865—1939)— Գերմանիայի սոցիալ-դեմոկրատական կուսակցության աջ, օպորտունիստական թևի պարագլուխը, 1918—1921 թվականներին գերմանական բանվորական շարժումը ճնշելու գործի կազմակերպիչներից մեկը։*

*4 Խոսքը Հունգարական Սովետական Հանրապետության մասին է, որը գոյություն ունեցավ 1919 թվականի մարտի 21-ից մինչև օգոստոսի 1-ը։ Սովետական իշխանությունը Հունգարիայում տապալվեց արտաքին և ներքին հակահեղափոխության միացյալ ուժերի կողմից։*

«Коммунист» № 6, 1977

## Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Ապրիլի 26—27-ը տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումում «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման միջոցառումների վերաբերյալ» զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ**:

Պլենումում «ՍՄԿԿ XXV համագումարի պահանջների լույսի ներքո կուսակցության մեջ ընդունելության և ՍՄԿԿ անդամության թեկնածուների դաստիարակության ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մասին» զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի քարտուղար ընկ. **Հ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԸ**:

Զեկուցումների շուրջը ծավալվեց մտքերի փոխանակություն:

Պլենումում ճառով հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գյուղատնտեսության բաժնի վարիչի տեղակալ ընկ. **Ն. Պ. ՌՈՒԴԵՆԿՈՆ**:

Քննարկված հարցերի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. **Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ**:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարց:

Պլենումը ընկ. **Ֆ. Տ. ՍԱՐԳՍՅԱՆԻՆ** ընտրեց ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի անդամ:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. **Ն. Ի. ԳՐԻՇԱԿՈՎԸ**:

---

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ*

*Ընկերնե՛ր:*

*Ամբողջ սովետական հասարակության զարգացումն ընթանում է ՍՄԿԿ XXV համագումարի գաղափարների հարաճուն ներգործության տակ: Հետևողականորեն կենսագործելով համագումարի որոշումները, սովետական մարդիկ պատրաստվում են արժանավայել դիմավորելու նշանակալի տարելիցը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը, ձգտում են ապահովել հորելյանական տարվա և ամբողջ հնգամյակի պլանների ու սոցիալիստական պարտավորությունների ժամկետից շուտ կատարումը:*

*Նոր հնգամյակը, անտարակույս, կդառնա երկրի ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր փուլ, մեծ դեր կխաղա արտադրողական ուժերի հետագա վերելքի գործում:*

*«Կուսակցությունը մշակել ու հետևողականորեն կենսագործում է գիտականորեն հիմնավորված տնտեսական ստրատեգիա՝ ուղղված հիմնարար, երկարաժամկետ նպատակների, որոնցից գերագույնը ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի անշեղ վերելքն է»,— ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:*

*ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ լուծում է տնտեսական շինարարության բարդ, խոշոր մասշտաբային խնդիրները: Մեր հայրենիքի ժողովրդական տնտեսությունը զարգանում է բարձր և կայուն տեմպերով, գիտատեխնիկական առաջադիմության լայն ծավալմամբ: Հետևողականորեն իրականացվում է համագումարի մշակած սոցիալական ծրագիրը: Արմատական դրական փոփոխություններ են տեղի ունենում աշխատավորների կյանքի բոլոր ոլորտներում:*

*Տնտեսական և սոցիալական կարևորագույն նպատակների իրագործմանն է ծառայում կուսակցության ժամանակակից ագրարային քաղաքականությունը, որը կոչված է գյուղատնտեսական արտադրությունը վերածելու ժողովրդական տնտեսության բարձր զարգացած սեկտորի: Նրա արագընթաց վերելքի հարցը կուսակցությունը համարում է ոչ միայն տնտեսական հարց, այլև քաղաքական, համակուսակցական, համապետական մեծ խնդիր:*

*ՍՄԿԿ-ի ժամանակակից ագրարային քաղաքականության կոնկրետ մարմնավորումն է գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային լայն ծրագիրը, որը մշակվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան ու հաջորդ պլենումներում և իր զարգացումը գտավ կուսակցության XXIV և XXV համագումարներում:*

*Կյանքը համոզիչ ապացուցում է այդ քաղաքականության գիտական ու ռեալիստական էությունը: Նրա իրականացման շնորհիվ երկրի գյուղատնտեսությունը հաստատորեն ընթանում է դինամիկ զարգացման ուղիով: Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո անցած տարիներին մեկ բնակչին ընկնող գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը աճեց գրեթե մեկ քառորդով, և դա ձեռք բերվեց երկրի բնակչության թիվը 23 միլիոնով ավելանալու պայմաններում: Գրեթե կրկնապատկվել են գյուղատնտեսության էներգե-*

* *Տպագրվում է կրճատումներով:*

տիկ կարողությունները: Գյուղը եռապատիկ ավելի շատ է ստանում հանքային պարարտանյութեր: Բարձրացել է հացահատիկային և մյուս գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը, անասունների և թռչունների մթերատվությունը: Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի արտադրողականությունը աճել է 58 տոկոսով:

Այդ ժամանակամիջոցում որոշակի որակական և քանակական տեղաշարժեր են կատարվել նաև մեր հանրապետության գյուղատնտեսության մեջ: Մեքենայական համակազմը և աշխատանքի էներգազինվածությունը ավելացել են 1,6 անգամ, էլեկտրաէներգիայի սպառումը աճել է ավելի քան 3,7 անգամ, հանքային պարարտանյութերի օգտագործումը՝ 3 անգամ: Ավելի քան 448 միլիոն ռուբլի է ներդրվել ջրաշինարարության մեջ, շահագործման են հանձնվել 93 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր: Հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքը ավելացել է մեկուկես անգամ:

Հանրապետության դաշտերի ու ֆերմաների աշխատավորները հաստատակամորեն սկսեցին տասներորդ հնգամյակը:

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի որոշումները, գյուղի աշխատավորները, լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, հաջողությամբ կատարեցին հնգամյակի մեկնարկային տարվա պլանային առաջադրանքները և դրանով իսկ զգալի ավանդ մուծեցին հանրապետության բոլոր աշխատավորների կողմից տասներորդ հնգամյակի առաջին տարում ձեռք բերված ընդհանուր հաջողությունների մեջ, որոնց համար Սովետական Հայաստանը ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցության հաղթող և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի, ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշի:

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց հուսալիորեն ապահովել պարենի և գյուղատնտեսական հումքի մատակարարումը երկրին, դրա համար մշտապես ունենալ բավականաչափ ռեզերվներ:

«...Այժմ չկա ավելի կենսական խնդիր,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում,— քան մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորը ամենաժամանակակից մակարդակին հասցնելը»:

Կուսակցությունը գյուղատնտեսության հետագա զարգացման գլխավոր ուղղությունը, զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարների իրականացման նոր փուլը համարում է գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը, նրա փոխադրումը ժամանակակից ինդուստրիալ հիմքի վրա: Համագումարի այս սկզբունքային ցուցումներն իրենց խոր մարմնավորումը գտան «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը է՛լ ավելի զարգացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Քաղաքական, տնտեսական և սոցիալական հսկայական նշանակություն ունեցող այդ փաստաթղթում տրված է արդի փուլում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման պրոբլեմների և նրա զարգացման հեռանկարների ծավալուն գիտական մշակումը: Որոշման մեջ հստակորեն սահմանված են արտադրության հանրայնացման մակարդակի հետագա բարձրացման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման, քաղաքի և գյուղի միջև էական տարբերությունների աստիճանական վերացման ուղիները:

Հենց գյուղատնտեսության զարգացման կոմպլեքսային ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասը կազմող պետական ու համակուսակցական այդ խոշորագույն խնդրի պրակտիկ իրականացման հարցերին է նվիրված մեր պլենումը:

Որպեսզի ճիշտ սահմանենք ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից բխող մեր կոնկրետ խնդիրները, անհրաժեշտ է հանգամանորեն վերլուծել հանրապետության գյուղատնտեսական արտադրության վիճակը՝ նրա մասնագիտացման ու համակենտրոնացման առումով:



Հանրապետությունում որոշակի աշխատանք է կատարվել գյուղատնտեսության զոնալ մասնագիտացման ասպարեզում՝ ելնելով հողակլիմայական պայմաններից: Որոշ քայլեր են արվել մասնագիտացված տնտեսություններ և արտադրություններ ստեղծելու, միջտնտեսային ձեռնարկություններ կազմակերպելու, ագրո-արդյունաբերական կազմավորումներ ստեղծելու գործում: Շահագործման են հանձնվել մի շարք խոշոր անասնապահական կոմպլեքսներ:

Դրա հետ մեկտեղ պետք է նշել, որ այդ ուղղությամբ աշխատանքները մեր հանրապետությունում կատարվել են անսիստեմ, անհետևողականորեն, առանց հարցերի անհրաժեշտ գիտական մշակման: Այդ ամենը թույլ չէր տալիս ապահովել ձեռնարկվող միջոցառումների տնտեսական պատշաճ արդյունավետությունը, հանգեցնում էր եղած միջոցների ու հնարավորությունների ոչ ռացիոնալ օգտագործման: Կոնկրետ ու նպատակասլաց ծրագրի բացակայությունը կուսակցական կոմիտեներին թույլ չէր տալիս ճիշտ կողմնորոշվելու տեղերում, կուսակցական կազմակերպությունների և գյուղի աշխատավորների ջանքերը կենտրոնացնելու արտադրության մասնագիտացման հարցերի լուծման վրա:

Ներկայումս հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների գյուղատնտեսական արտադրությունը անթույլատրելիորեն բազմաճյուղ բնույթ է կրում, ցածր է տեխնոլոգիայի և արտադրության կազմակերպման մակարդակը: Ցանքատարածությունների ու տնկարկների մանրատվածությունը, անասնապահական ֆերմաների սակավազորությունը այսօր բնորոշ են հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների մեծամասնության համար:

Իհարկե, գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ուղղությունների այդպիսի խայտաբղետության պատճառները վերլուծելիս չի կարելի հաշվի չառնել մեր շրջանների մեծամասնության բնակլիմայական պայմանների մեծ բազմազանությունն ու բարդությունը՝ լեռնային ռելիեֆը, ուղղահայաց գոտիականությունը, սակավահողությունը, չորային կլիման և այլն: Բայց մի՞թե միայն սրանով է պայմանավորված մեր կոլտնտեսությունների և սովխոզների մեծամասնության արտադրության բազմաճյուղ բնույթը: Իհարկե, ո՛չ: Հիմնական պատճառը տնտեսավարման, պլանավորման և կառավարման կազմակերպական ձևերի անկատարությունն է, զարգացած կոոպերատիվ կապերի բացակայությունը, որի հետևանքով աշխատանքի արտադրողականությունը գյուղատնտեսության մեջ աճում է դանդաղ տեմպերով, արտադրության շահութաբերությունը մնում է ցածր, շատ ճյուղեր, հատկապես անասնապահության մեջ, շահութաբեր չեն:

Գյուղատնտեսությունը որակապես նոր մակարդակի բարձրացնելու մասին ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրները հաջողությամբ կատարելու համար մենք պետք է գտնենք նրա հետագա զարգացման խնդիրների լուծման նոր մոտեցումներ ու բանալիներ, որոնք պարզ ու հստակ շարադրված են ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Հայտնի է, որ վերջին երկու տարում հանրապետությունը գյուղատնտեսության բնագավառում որոշակի հաջողությունների է հասել: Սակայն նվաճված ցուցանիշները, որոնք հիմնականում քանակական կարգի են, սոսկ աշխատանքի կարգապահության, կազմակերպվածության, աշխատանքի հանձնարարված բնագավառի համար կադրերի անձնական պատասխանատվության բարձրացման, հողագործության, անասնապահության կուլտուրայի որոշ բարձրացման և այլ գործոնների արգասիք են: Անկասկած, ձեռնարկված միջոցները շատ անհրաժեշտ էին և ժամանակին, սակայն խոշոր մասշտաբի խնդիրների լուծման համար դրանք ակնհայտորեն անբավարար են: Գյուղատնտեսությունը որակապես նոր աստիճանի բարձրացնելու պարտադիր, առավել ճիշտ ուղին, ինչպես նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործումն է, հանրայնացման պրոցեսների ուժեղացումը, աշխատանքի հետագա բաժանումը՝ արտադրության առավել խորացված մասնագիտացման ու համակենտրոնացման բազայի վրա, որոնք հնարավորություն են ընձեռում ավելի լրիվ ու ավելի արդյունավետ օգտագործելու ժամանակակից գիտության ու տեխնիկայի նվաճումները և առաջավոր տեխնոլոգիան:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման հրապարակումից հետո հանրապետությունում իրականացվել են առաջադրված խնդիրների լուծման մեծ ու բազմակողմանի աշխատանքի առաջին փուլի մի շարք միջոցառումներ։

Բոլոր կոլտնտեսություններում, պետական տնտեսություններում և մյուս գյուղատնտեսական կազմակերպություններում, մինիստրություններում ու գերատեսչություններում ուսումնասիրվել է ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։

Կոլտնտեսությունների, պետական տնտեսությունների, մյուս գյուղատնտեսական ձեռնարկությունների սկզբնական կուսակցական կազմակերպությունների, շրջանային կուսակցական ակտիվների ժողովներում, մինիստրությունների և գերատեսչությունների կոլեգիաների ընդլայնված նիստերում քննարկվել են կուսակցական կազմակերպությունների, մինիստրությունների և գերատեսչությունների խնդիրները ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման ասպարեզում և ընդունվել ծավալուն որոշումներ՝ սահմանելով մշակված միջոցառումների կատարման ժամկետները։ Շրջաններում ճշգրտվել ու կոնկրետացվել են արտադրության մասնագիտացման և միջտնտեսային կոոպերացման կիրառման պլանները։ Դրանք քննարկվել և հավանություն են ստացել կուսակցության շրջկոմների պլենումներում, կուսակցական ակտիվի շրջանային ժողովներում։

Ստացված ինֆորմացիայի ուսումնասիրումը ցույց է տվել, որ տեղերում, ճիշտ գնահատելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման քաղաքական, տնտեսական և սոցիալական նշանակությունը, արվել են կուսակցության ագրարային քաղաքականության պահանջներից բխող առաջարկություններ, որոնք նպատակամղված են արտադրության ինտենսիվացման տեմպերն զգալիորեն արագացնելուն, արտադրությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելուն և զարգացման որակապես նոր աստիճանի բարձրացնելուն։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, ընդհանրացնելով մինիստրությունների և գերատեսչությունների, կուսակցության շրջկոմների և շրջանային սովետների գործադիր կոմիտեների առաջարկությունները, մշակել է միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բաղայի վրա արտադրության հետագա մասնագիտացման ու համակենտրոնացման միջոցառումներ։

Հաշվի առնելով գյուղատնտեսական մթերքների ընդհանուր-միութենական և տեղական պահանջմունքները, ինչպես նաև նպատակ ունենալով ավելի արդյունավետ օգտագործել բնական և տնտեսական պայմանները, նպատակահարմար է համարվում հանրապետության գյուղատնտեսության հեռանկարային զարգացումը հետևյալ երեք հիմնական ուղղություններով։

Առաջին՝ խաղողագործության, պտղաբուծության, բաց և պաշտպանված գրունտի բանջարաբուծության, մասամբ ծխախոտագործության և եթերայուղային հումքի արտադրության հետագա զարգացում, որպես ճյուղեր, որոնք որոշում են հանրապետության մասնագիտացումը աշխատանքի ընդհանուր-միութենական տերիտորիալ բաժանման մեջ։

Երկրորդ՝ հանրապետության բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարումը նվազ փոխադրահարմար մթերքների՝ կաթի, բանջարեղենի, բոստանային կուլտուրաների, կարտոֆիլի, խաղողի, պտուղների, ձվի նկատմամբ՝ սեփական արտադրության հաշվին։ Համամիութենական ֆոնդին տրվող թարմ բանջարեղենի, վաղահաս կարտոֆիլի, պտուղների ու խաղողի մատակարարումների ավելացումը։

Երրորդ՝ մսի, բրդի և մյուս գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացում՝ հաշվի առնելով տեղական հնարավորությունները։

Ելնելով զարգացման նախատեսված ուղղություններից, ինչպես նաև հաշվի առնելով բնակլիմայական և տնտեսական պայմանները, միջոցառումների մեջ առաջարկվում է գյուղատնտեսությունը մասնագիտացնել ըստ գոտիների։

Գյուղատնտեսության գիտականորեն հիմնավորված տեղաբաշխման իրականացումը հնարավորություն կտա ապահովել այն ճյուղերի արդյունավետ զարգացումը, որոնց համար լավագույն պայմաններ կան։ Պետպլանը, համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ,



պետք է գյուղատնտեսության զարգացման տարեկան ու հնգամյա պլանները կազմելիս հետևողականորեն և նպատակասլաց աշխատանք կատարի նրա շոնալ մասնագիտացման հետագա խորացման ասպարեզում։

Գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումը առնչված է նրա համակենտրոնացման հետ, որը թույլ է տալիս իրականացնել արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում, արմատավորել առաջավոր տեխնոլոգիան և գիտության ու տեխնիկայի նվաճումները, դրանով իսկ հասնել ամենաբարձր տնտեսական արդյունքների։

Ինչպես ասվեց, վերջին տարիներս հանրապետության շատ կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական բազան զգալիորեն ամրապնդվել է, սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, առանձին կոլտնտեսության և սովխոզի համար, չնայած սեփական մեծ կուտակումներին, դժվար է և ոչ միշտ տնտեսապես նպատակահարմար՝ ստեղծել առաջավոր տեխնոլոգիայով հագեցած արդիական գյուղատնտեսական արտադրություն։ Ներկայումս հրամայական անհրաժեշտություն է՝ միավորել կոլտնտեսությունների, սովխոզների և մյուս ձեռնարկությունների ջանքերը։ Ուստի, արտադրության կազմակերպման բոլոր ձևերից կուսակցությունը առաջին պլանի վրա է դնում մասնագիտացումն ու համակենտրոնացումը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բաղայի վրա։ «Այստեղ,— ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— թաքնված են արտադրության ծավալների աճի, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման, հողագործության և անասնապահության արտադրանքի ինքնարժեքի իջեցման հսկայական հնարավորություններ»։

Միջտնտեսային կոոպերացման առավելությունները և արտադրության էկոնոմիկայի վրա նրա դրական ներգործությունը երևում են նաև երկրի և մեր հանրապետության միջտնտեսային ձեռնարկությունների ու մասնագիտացված տնտեսությունների բազմաթիվ օրինակներից։ Բերենք փաստեր։

Երկու տարուց փոքր-ինչ ավելի է անցել «Միջկոլտնտեսային և պետական-կոլտնտեսային ձեռնարկությունների (կազմակերպությունների) կազմակերպման ու զարգացման մասին» Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի որոշման ընդունումից։ Այդ ժամանակամիջոցում հանրապետությունում կազմակերպվել է 44 միջտնտեսային ձեռնարկություն։ Ապարանի, Աշտարակի, Կամոյի, Թումանյանի, Էջմիածնի և այլ շրջաններում կազմակերպվել են հոտի վերարտադրության համար երինջների աճեցման, Սպիտակի, Կրասնոսելսկի, Ղուկասյանի, Սիսիանի շրջաններում՝ խոշոր եղջերավոր անասունների մատղաշի աճեցման ու բտման, Հրազդանի և Թալինի շրջաններում՝ կերի արտադրության ձեռնարկություններ։ Կան նաև խոզաբուծական, թռչնաբուծական, ճագարաբուծական, մեղվաբուծական, փակ գրունտի բանջարեղենի արտադրության, շինարարական միջկոլտնտեսային ձեռնարկություններ։

Այդ միջտնտեսային ձեռնարկություններից մի քանիսի աշխատանքի վերլուծությունը ցույց է տալիս, որ դրանցում բարենպաստ պայմաններ են ստեղծվում տեխնիկայի, կապիտալ ներդրումների ռացիոնալ օգտագործման, արտադրության առաջավոր տեխնոլոգիաների ներդրման համար։ Միջտնտեսային ձեռնարկություններում անասնապահական մթերքների արտադրության վրա կատարվող աշխատանքային ծախսումները, որպես կանոն, 2,5—3 անգամ, իսկ դրանց ինքնարժեքը՝ 1,3—1,6 անգամ ավելի ցածր են, քան չմասնագիտացված տնտեսություններում։

Դրա հետ մեկտեղ, անհրաժեշտ է նշել, որ գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության առանձին շրջկոմներ, շրջգործկոմներ, շրջանային գյուղատնտեսական մարմիններ երբեմն անպատասխանատվություն են ցուցաբերում և մակերեսորեն են զբաղվում միջտնտեսային կոոպերացման կարևոր գործով։ Մի շարք միջտնտեսային ձեռնարկություններ կազմակերպելիս հարցերը կոմպլեքսային ձևով չեն լուծվել։ Հանրապետության որոշ միջտնտեսային ձեռնարկություններում լուծված չէ նրանց հողամասեր ամրացնելու հարցը, չի

քավականացնում անասնակերը, մյուսներում չեն որոշված գլխաքանակի օպտիմալ չափերը, երրորդներում՝ շենքերի ու տեխնիկայի խնդիրը:

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը բերում է միջտնտեսային ձեռնարկությունների կազմակերպման կարևոր գործի նկատմամբ առանձին շրջաններում ոչ բանիմաց, ձևական վերաբերմունք ցուցաբերելու կոնկրետ փաստեր, նշում, որ դրա հետևանքով հանրապետության որոշ միջտնտեսային ձեռնարկություններ աշխատում են ոչ միայն ցածր շահութաբերությամբ, այլև վնասով: Այսպես, Արարատի շրջանի միջտնտեսային թռչնաֆաբրիկան 1976 թվականը փակեց 57,2 հազար ռուբլու վնասով: Այլ կերպ չէր էլ կարող լինել, երբ 1.000 ձվի ինքնարժեքը կազմում էր 178 ռուբլի, իսկ արտադրած թռչնամսի մեկ ցենտները՝ 731 ռուբլի:

Զեկուցողը սուր քննադատության է ենթարկում առանձին շրջանների կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների, տնտեսությունների ղեկավարների, հանրապետական գյուղատնտեսական մինիստրությունների անբավարար աշխատանքը այդ բնագավառում:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կուսակցական, սովետական, գյուղատնտեսական կազմակերպություններից վճռականորեն պահանջում է վերջ տալ այդ դրությանը և ամեն ինչ անել՝ ապահովելու միջտնտեսային ձեռնարկությունների և կազմակերպությունների նորմալ աշխատանքը:

Արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման պրոցեսը բարդ է ու բազմակողմանի: Ուստի ՍՄԿԿ Կենտկոմը իր որոշման մեջ, նշելով, որ շատ հանրապետություններում, երկրամասերում և մարզերում մասնագիտացման ու համակենտրոնացման ասպարեզում սոսկ առաջին քայլերն են արվել, որ այդ գործը առայժմ գտնվում է ամենանախնական փուլում, զարգանում է՝ հարմարվելով գյուղատնտեսական արտադրության պլանավորման, ֆինանսավորման, նյութատեխնիկական ապահովման և կառավարման գոյություն ունեցող կարգին, անհրաժեշտ գտավ, որ այդ պրոցեսին պլանաչափ բնույթ տրվի: Այս կապակցությամբ կուսակցական, սովետական և գյուղատնտեսական մարմինների ուշադրությունը հրավիրվեց միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը գործնականորեն իրականացնելու հետ առնչված բոլոր հարցերի լուծմանը շերտավորված մոտեցում ցուցաբերելու և փուլ առ փուլ լուծելու անհրաժեշտության վրա: Միջտնտեսային միավորումների և ձեռնարկությունների կազմակերպումը պետք է կատարվի գիտական հանգամանալի մշակումների հիման վրա: Այստեղ անթույլատրելի են հապճեպությունն ու անհիմն վազանցը, չմտածված որոշումներ ընդունելը, միջտնտեսային միավորումներում տնտհաշվարկային հարաբերությունների դերի նսեմացումը: Մասնագիտացման և համակենտրոնացման միջոցառումները պետք է կազմեն գյուղատնտեսության բնագավառի մեր պլանների բաղկացուցիչ մասը: Գործը պետք է այնպես կազմակերպվի, որպեսզի անցումային ժամանակաշրջանում չխանգարվի պետական պլանների կատարումը: Ցավոք, տեղերում առանձին ղեկավարներ, մոռանալով, որ, վերջին հաշվով, մասնագիտացումն ու համակենտրոնացումը նպատակամղված են գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, հապճեպություն են ցուցաբերել և, առանց նոր միջտնտեսային ֆերմաներ կազմակերպելու, վերացրել են հները և դրա հետևանքով կրճատել ինչպես անասունների գլխաքանակը, այնպես էլ անասնապահական մթերքների արտադրությունը: Պետք է վճռականորեն խափանել նման «նորարարությունը», վերականգնել անհիմն կերպով վերացված ֆերմաները, անասունների գլխաքանակը հասցնել նախկին մակարդակին և դրանից հետո միայն մտածել արտադրության համակենտրոնացման մասին:

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը մեր ուշադրությունն է հրավիրել մասնագիտացման պրոցեսի ևս մի կարևոր կողմի վրա: Բանն այն է, որ նոր մասնագիտացված կոմպլեքսը կազմակերպելիս արտադրական օբյեկտների վերակառուցումն ու արդիականացումը հիմնականում պետք է կատարվեն փայատեր տնտեսությունների ներքին ռեսուրսների և ոչ թե պետական լրացուցիչ կապիտալ ներ-



դրումների հաշվին: Հարկավոր է գործն այնպես կազմակերպել, որ նրա հաջողությամբ շահագրգռված լինեն իրենք փայատեր տնտեսությունները: Նպատակահարմար է սկզբնական շրջանում պարզագույն տիպի միջտնտեսային ձեռնարկությունները կազմակերպել հին արտադրական կարողությունների բազայի վրա: Հետագայում, երբ նոր ձեռնարկությունը տնտեսապես կամրապնդվի, սեփական արտադրության միջոցների հաշվին այն կստեղծի ժամանակակից արտադրական օբյեկտներ: Սակայն այս դեպքում չպետք է հրապուրվել այդ ձեռնարկության առանձնապես խոշոր չափերով: Անհրաժեշտ է յուրաքանչյուր գոտու համար ընտրել մասնագիտացված տնտեսությունների առավել նպատակահարմար չափեր:

Միջտնտեսային կոոպերացման աշխատանքը կատարելիս հանրապետությունում անհրաժեշտ է փուլ առ փուլ լուծել գյուղատնտեսական արտադրության ինտեգրացման հետ կապված բոլոր հարցերը: Նախ հարկավոր է միջտնտեսային և արդյունաբերական հիմքի վրա փոխադրել առավել շահութաբեր ճյուղերը, որոնք հնարավորություն կտան կարճ ժամանակում ավելացնել կոլտնտեսությունների և սովխոզների կուտակումները, ապա, տնտեսությունների շահութաբերության աճի և նրանց ֆինանսական դրության ամրապնդման համեմատ, կոոպերացում իրականացնել նաև պակաս շահութաբեր ճյուղերում: Ընդ որում, պետք է պահպանել տնտհաշվարկային հստակ հարաբերությունները և կողմերի պատասխանատվությունը պայմանագրային պարտավորությունների կատարման համար:

Մեր հանրապետությունում գյուղատնտեսական ձեռնարկությունների և կազմակերպությունների բոլոր ձևերից արտադրությունը առավել խոր ու լիակատար չափով մասնագիտացվել և համակենտրոնացվել է պետական անասնապահական համալիրներում: Հենց այստեղ է անասնապահական մթերքների արտադրությունը փոխադրվել արդյունաբերական հիմքի վրա: Հետևաբար, այդ ձեռնարկությունները արտադրության կազմակերպման ու տեխնոլոգիայի տեսակետից պետք է օրինակ ծառայեն ու փարոս լինեն հանրապետության մյուս տնտեսությունների համար: Ուրեմն՝ նրանց գործառնության արդյունավետությունը, նորմալ աշխատանքը ոչ միայն զուտ տնտեսական խնդիր է, այլև քաղաքական տարողություն ունի: Այս տեսակետից կարևոր է քննության առնել, թե որքանով են այդ ձեռնարկությունները համապատասխանում իրենց կոչմանը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը, վերջերս քննարկելով գործերի վիճակը «Հայթռչնարդ»-ի ձեռնարկություններում, ի հայտ բերեցին մի շարք լուրջ թերություններ: Պարզվեց, որ թռչնաֆաբրիկաների բնավ ոչ փայլուն տնտեսական ցուցանիշները հիմնականում բացատրվում են ցեղաբուծական աշխատանքի խիստ ցածր մակարդակով, անհրաժեշտ վերարտադրող ֆերմաների (ռեպրոդուկտորների) բացակայությամբ: Բայց չէ՞ որ հայտնի է, որ արդյունաբերական թռչնաբուծությունը վարել առանց լավ հիմքերի վրա դրված ցեղաբուծական աշխատանքի՝ նշանակում է գործը կանխավ ձախողման մատնել: Մսի արտադրության և ձվերի աճեցման տեխնոլոգիայի կոպիտ խախտումները, կերի մշտապես խոշոր գերածախսերը, թռչունների անկման բարձր տոկոսը աշխատանքի նորմա են դարձել վարչության թռչնաբուծական ֆաբրիկաների մեծամասնության համար: Բարձիթողի վիճակում են հաշվառումն ու հաշվետվությունը, եղել են սոցիալիստական սեփականության հափշտակման դեպքեր: Հիշյալ թերությունների համար Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն կուսակցական խիստ տույժի է ենթարկել «Հայթռչնարդ»-ի վարչության նախկին պետ Մ. Շառոյանին, նրա տեղակալ Ա. Սարգսյանին և հանրապետության գյուղատնտեսության մինիստրի տեղակալ Վ. Սերոբյանին: «Հայթռչնարդ»-ի նոր ղեկավարությունը գյուղմինիստրության օգնությամբ պետք է հույժ եռանդուն միջոցներ ձեռնարկի՝ ամենաարագ կերպով շտկելու ստեղծված կացությունը:

Համանման վիճակ է ստեղծվել նաև գյուղատնտեսության մինիստրության «Հայանասնարդ»-ի սիստեմում՝ խոզաբուծության ասպարեզում:

Անասնապահական համալիրի հաջողության գլխավոր պայմանը բարձր մթերատու անասուններն են, հուսալի կերի բազան, արտադրության նպատակահարմար ծավալը, նրա վարման ժամանակակից գիտատեխնիկական միջոցների կիրառումը։ Սակայն պետպլանը (ընկ. ընկ. Ս. Թումանյան, Պ. Արզումանյան), գյուղատնտեսության մինիստրությունը (ընկ. Հ. Թարջումանյան), նրա գիտահետազոտական ինստիտուտները դեռևս չեն մշակել ցեղաբուծական աշխատանքը կազմակերպելու, կերի կայուն բազա ստեղծելու և մասնագիտացված ձեռնարկությունների նպատակահարմար չափերի վերաբերյալ պարզ ու հստակ հանձնարարականներ։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը, քննարկելով այդ հարցերը, մշակեցին ստեղծված դրությունը շտկելու պրակտիկ կոնկրետ միջոցառումներ։ Համապատասխան մինիստրությունների և գերատեսչությունների խնդիրն է՝ անհապաղ իրագործել այդ միջոցառումները և ապահովել պետական անասնապահական համալիրների արտադրական կարողությունների արդյունավետ ու ռիթմիկ շահագործումը։

Գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու արդի փուլում, հանրապետության գյուղատնտեսության ընդհանուր վերելքի և կապիտալ ներդրումների արդյունավետ օգտագործման նպատակներով, անհրաժեշտ է անասնապահական նոր համալիրների շինարարությունը, միջտնտեսային ձեռնարկությունների կազմակերպումը խելացիորեն զուգակցել կոլտնտեսություններում և սովխոզներում գոյություն ունեցող ֆերմաների մասնագիտացման և ընդլայնման հետ։ Ընդ որում, մեր հանրապետության պայմաններում այդ ֆերմաների մասնագիտացումը, կոմպլեքսային մեքենայացումը և կերի բազայի ամրապնդումը չպետք է դրվեն երկրորդ պլանի վրա։

Հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում անասնապահության արդի վիճակը չի համապատասխանում ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրներին և մեր հնարավորություններին ու ռեզերվներին։ Հանրապետության ավելի քան 320 տնտեսություններում 1976 թվականին կովերի միջին կաթնատվությունը կազմել է 1.000—1.600 կգ և միայն 24 տնտեսություններ կամ մոտավորապես 3 տոկոսը ապահովել են 3 հազար կիլոգրամից ավելի միջին կաթնատվություն։ Այս ամենը դարձյալ արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման ցածր աստիճանի հետևանք է։

Հանրապետության 711 կոլտնտեսություններից և սովխոզներից 223-ում կամ 32 տոկոսում կովերի գլխաքանակը չի հասնում 150-ի, իսկ 87 տնտեսություններում 100 գլուխ էլ չկա և միայն 86 տնտեսություններում կամ 5 տոկոսում կենտրոնացված է 500 գլխից ավելի։ Դատեցեք ինքներդ. կարելի՞ է, արդյոք, այս ամենից հետո խոսել կոլտնտեսություններում և սովխոզներում կաթի արտադրության շահութաբերության մասին։

Դրանից քիչ բանով է տարբերվում նաև անասնաբուծության մյուս ճյուղերի վիճակը։ Ոչխարաբուծությամբ զբաղվող կոլտնտեսությունների ու սովխոզների 68 տոկոսում ոչխարների գլխաքանակը 3.000-ից պակաս է, իսկ տնտեսությունների 13 տոկոսում՝ 1.000-ի էլ չի հասնում։ Այս ամենն ապացուցում է, թե որքան արդիական ու կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը մեր հանրապետության անասնապահության համար։

Հաշվի առնելով հանրապետության գյուղատնտեսական արտադրության առանձնահատկությունները, անասնապահությունը հետագայում պետք է զարգանա հետևյալ ուղղություններով. բնակչությանը լիովին ապահովել կաթնամթերքներով և ձվով՝ սննդի գիտականորեն հիմնավորված նորմաներով ավելացնել մսի արտադրությունը, նպատակ ունենալով առավելագույն չափով կրճատել խզումը հանրապետության բնակչության պահանջմունքի և սեփական արտադրության միջև. ապահովել կաթի արտադրության աճը՝ շվեյցարական պանրի և պանրի որոշ ազգային տեսակների արտադրությունն ավելացնելու համար. բրդի և մեղվաբուծական արտադրանքի արտադրության հետագա ավելացում։ Հարկավոր է հիմնական միջոցներն ու ջանքերը նպատակամղել գյուղատնտեսական կենդանիների մթերատվության բարձրացմանը։



Ընդսմին, կաթի և մսի արտադրության անհրաժեշտ աճն ապահովելու նպատակով պետք է հանրային նախրում ավելացնել կովերի տեսակարար կշիռը, հասցնելով 45 տոկոսի, իսկ Երևանի, Լենինականի, Կիրովականի քաղաքամերձ գոտիներում՝ 60 տոկոսի և կատարել անասնապահության խոր մասնագիտացում։

Դրա համար անհրաժեշտ է հանրապետությունում ստեղծել տավարի մսի արտադրությամբ և հոտի վերարտադրության համար մատղաշների աճեցմամբ զբաղվող միջտնտեսային ձեռնարկությունների պետական համալիրների և հատուկ տնտեսությունների կանոնավոր ցանց, այդ ֆունկցիաներից առավելագույն չափով ազատելով պետական կաթնային համալիրները և կոլտնտեսությունների և սովխոզների կաթնապրանքային ֆերմաները։

Անասնապահական տնտեսությունների և ձեռնարկությունների գերակշռող մեծամասնությունը մինչև 1980 թվականը կմասնագիտանա կամ կաթի, կամ մսի արտադրության, կամ էլ ցեղական հորթերի աճեցման ասպարեզում։ Դա հնարավորություն կտա ջանքերը կենտրոնացնել անասունների մթերատվությունը բարձրացնելու վրա և մինչև հնգամյակի վերջը պետական համալիրներում միջին կաթնատվությունը հասցնելու 3.200 կիլոգրամի, իսկ խոշոր մեքենայացված տնտեսություններում՝ 2.500 կիլոգրամի։ Պետությանը վաճառվող խոշոր եղջերավոր յուրաքանչյուր անասունի միջին կենդանի քաշը կհասցվի 300—350 կիլոգրամի։

Անցնելով ոչխարաբուծությանը, հարկ է նախ և առաջ ասել, որ վերջին ժամանակներս անասնապահության բոլոր ճյուղերից առավել անբարեհաջող դրությունը հենց այս ճյուղում է։ Ցածր են ոչխարների գլխաքանակի աճի տեմպերը, նվազ է նրանց բրդատվությունը և մսակաթնային մթերատվությունը։ Բավական է նշել, որ վերջին 10—15 տարում փաստորեն չի ավելացել մեկ ոչխարի բրդատվությունը։ Ազիզբեկովի, Ապարանի, Սիսիանի շրջաններում մեկ ոչխարից ստանում են 1,6—1,9 կիլոգրամ բուրդ, որն զգալիորեն ցածր է հանրապետական միջին ցուցանիշից։

Խիստ կերպով նվազել է անասնապահության այդ երբեմնի շահութաբեր ճյուղի տնտեսական արդյունավետությունը։

Անհրաժեշտ է ուշադրություն հրավիրել հանրապետության մի շարք շրջաններում ոչխարների գլխաքանակի դանդաղ աճի վրա և, մյուս կողմից, արոտավայրերի, հատկապես լեռնային բարձրադիր արոտավայրերի, ոչ ռացիոնալ օգտագործման վրա։

Գյուղատնտեսության մինիստրության խնդիրն է՝ ի հայտ բերել խոշոր եղջերավոր անասունների համար չօգտագործվող արոտավայրերը և դրանցում կազմակերպել մասնագիտացված ոչխարաբուծական տնտեսություններ։ Այս գործում արդեն կա որոշակի դրական փորձ։ Գյուղատնտեսության մինիստրությունը ոչխարաբուծական խոշոր տնտեսություններ է կազմակերպել Արտաշատի, Արարատի, Աբովյանի և այլ շրջաններում։

Նախատեսված է մայրական գլխաքանակի տեսակարար կշիռը հասցնել 70—75 տոկոսի, ապահովելով մինչև մեկ տարեկան մատղաշի իրացումը, բացի հոտի վերարտադրության համար նախատեսված մատղաշից։ Տնտեսությունների նեղ մասնագիտացումը, նրանց կերի բազայի ամրապնդման, անասնաբուծական-անասնաբուժական կանոնների խստիվ կիրառման և ցեղատեսակների կատարելագործման հետ մեկտեղ, զգալիորեն կբարձրացնի բրդատվությունն ու ոչխարի մսի արտադրությունը և կտնտեսի մեծ քանակությամբ կոշտ ու հյութալի կեր։

Խոզաբուծությունը և թռչնաբուծությունը հանրապետությունում ամբողջովին կփոխադրվեն արդյունաբերական հիմքի վրա և հիմնականում կկենտրոնացվեն խոշոր պետական համալիրներում ու մի շարք միջտնտեսային ձեռնարկություններում։

Նախատեսված է հանրապետությունում խոզերի գլխաքանակը ավելացնել 50—52 տոկոսով։ Խոզերի գլխաքանակի ավելացմանը և այդ արտադրության համակենտրոնացմանը զուգահեռ, գյուղատնտեսության մինիստրությունը

պետք է մշակի և իրականացնի խոզաբուծությունը խոզի մսի արտադրության ժամանակակից տեխնոլոգիայի փոխադրելու պլան՝ լայնորեն օգտագործելով միջցեղային և միջգծային հիբրիդները։

Նախատեսված միջոցառումները թույլ են տալիս խոզի մսի արտադրությունը 1980 թվականին հասցնել 17 հազար տոննայի կամ 1976 թվականի համեմատությամբ ավելացնել 90 տոկոսով։

Ինչպես վերևում ասվեց, ելնելով մեր հանրապետության պայմաններից, խոշոր եղջերավոր անասունների և ոչխարների գլխաքանակը ապագայում պետք է հասցվի որոշակի կայուն մակարդակի։ Ուրեմն՝ կաթի, տավարի ու ոչխարի, մսի և բրդի արտադրությունն ըստ ամենայնի ավելացնելու միայն մեկ ճանապարհ ունենք. բարձրացնել անասնապահության այդ գլխավոր ճյուղերի մթերատվությունը։ Մեր ամբողջ աշխատանքն այդ ճյուղերում՝ մասնագիտացումն ու համակենտրոնացումը, մեքենայացումը լինի դա, թե կերահայթայթումը, անասնաբուծական, անասնաբուժական միջոցառումների իրականացումը, պետք է ի սպաս դրվի այդ գլխավոր խնդրի ապահովմանը։ Իսկ ինչպիսի՞ն է գործերի վիճակը և ինչպե՞ս ենք լուծում մենք այդ պրոբլեմը։ Կարելի է ասել՝ ոչ այնքան նպատակասլաց։ Անասնապահական մթերքների արտադրությունը և գյուղատնտեսական կենդանիների մթերատվությունը հանրապետությունում դանդաղ տեմպերով է աճում։

Կուսակցության շատ շրջկոմների, շրջսովետների գործկոմների, գյուղատնտեսական մարմինների անբավարար աշխատանքը հասցրել է այն բանին, որ անասնապահության մթերատվության շատ ցուցանիշներով շրջանների մեծամասնությունը վերջին տարիներս գործնականում դոփում է տեղում։

Գործերն առանձնապես վատ են Ազիզբեկովի, Ապարանի, Վարդենիսի, Մարտունու, Մեղրու և մի քանի այլ շրջաններում, որտեղ յուրաքանչյուր կովի միջին կաթնատվությունը կազմում է ընդամենը 1.297—1.391 կիլոգրամ, կամ 418—512 կիլոգրամով պակաս, քան հանրապետության միջինը։ Իսկ չէ որ հանրապետության համար այդ ցուցանիշը ամենևին էլ բավարար չէ և չի համապատասխանում մեր հնարավորություններին։

Անասնապահության ցածր մթերատվության հիմնական պատճառներից մեկը ցեղաբուծության գործի անբավարար դրվածքն է և նախրի վերարտադրության աննորմալ վիճակը։ Գյուղատնտեսության մինիստրությունը, նրա գիտական հիմնարկները և տեղական գյուղատնտեսական մարմինները, կուսակցության շրջկոմները և շրջգործկոմները կոմպլեքսային, նպատակասլաց աշխատանք չեն կատարել անասունների մթերատու հատկությունները կատարելագործելու ուղղությամբ։ Այլապես ինչո՞վ բացատրել, որ այն պայմաններում, երբ հանրապետությունում երկար տարիներ կատարվում է կովերի ու երինջների արհեստական սերմնավորում, առ այսօր զտացեղ կենդանիների տեսակարար կշիռը աննշան է։ Եվ դա ցեղական անասունների պարբերական ներմուծման դեպքում։

Առաջավոր շրջանների և տնտեսությունների փորձը հաստատում է, որ այնտեղ, որտեղ սելեկցիոն-ցեղաբուծական աշխատանքի հարցերին, նախրի վերարտադրությանը, անասունների կերակրմանն ու խնամքին բավարար ուշադրություն է նվիրվում, դրական արդյունքներն առկա են։ Ասվածը հաստատելու համար կարելի է անել այսպիսի համեմատություն. Կալինինոյի և Սիսիանի շրջանները ավանդաբար անասնապահական շրջաններ են, մոտավորապես միատեսակ կերային հնարավորություններով և կովերի միահավասար գլխաքանակով։ Առաջին շրջանում, որտեղ վերոհիշյալ հարցերին բավարար ուշադրություն է նվիրվում, մեկ կովի միջին կաթնատվությունը կազմում է 2.800 կիլոգրամ, իսկ երկրորդ շրջանում՝ ընդամենը 1.595 կիլոգրամ։ Կարող են առարկել, թե հիշյալ շրջանները կողք-կողքի չեն, ուստի, բերենք երկու հարևան կոլտնտեսությունների՝ Արարատի շրջանի Թայթան և Շիրազլու գյուղերի կոլտնտեսությունների օրինակը։ Թայթանում անցյալ տարի մեկ կովի միջին կաթնատվությունը կազմեց 3.082 կիլոգրամ, իսկ Շիրազլուում՝ դրանից մոտավորապես 900 կիլոգրամով պակաս։



Շատ շրջաններում հանրային նախրում կովերի տեսակարար կշիռը խիստ ցածր է, որը չի ապահովում նախրի նորմալ վերարտադրությունը։ Խնդիրը բարդանում է նաև նրանով, որ այդ շրջաններում պատշաճ ուշադրություն չի նվիրվում նախրի շրջանառության արագացմանը, չեն նախապատրաստվում անհրաժեշտ քանակությամբ երինջներ՝ մայրական գլխաքանակը ամեն տարի համալրելու համար։ Եղեգնաձորի, Սևանի, Շամշադինի, Գուգարքի, Կամոյի, Մարտունու և ուրիշ շատ շրջանների տնտեսություններում երինջների գլխաքանակը կազմում է կովերի գլխաքանակի միայն 8—10 տոկոսը, մինչդեռ երկրի առաջավոր տնտեսություններում ամեն տարի հարյուր կովի դիմաց կովերի խումբն է փոխանցվում 25—27 առաջնածին երինջ, որը հնարավորություն է ընձեռում կատարել նախրի ինտենսիվ նորացում և ապահովել գլխաքանակի անհրաժեշտ աճ։

Եթե Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումներում և կոմկուսի XXVI համագումարում խնդիրը դրվում էր կոլտնտեսություններում և սովխոզներում ցեղաբուծական աշխատանքը բարելավելու առումով, ապա այժմ այդ հարցը խիստ բազմաբնույթ է դառնում։ Անհրաժեշտ է կատարելագործել սելեկցիոն-ցեղաբուծական աշխատանքի ամբողջ սիստեմը մասնագիտացված խոշոր տնտեսությունների և միավորումների բազայի վրա։

Ցավոք, անասնապահության համար կենսականորեն կարևոր այդ հարցում չկա գիտականորեն հիմնավորված ծրագիր։ Մինչև օրս հանրապետությունում գիտականորեն չի լուծվել անասունների ցեղային շրջանացման հարցը։ Դրա հետևանքով կոլտնտեսությունների և պետական տնտեսությունների ֆերմաներում հիմնական՝ կովկասյան գորշ ցեղի կողքին բուծվում են նաև ութ ցեղերի կովեր և դրանց տարբեր խառնածիններ։

Մասիսի, Էջմիածնի, Արտաշատի, Հոկտեմբերյանի և մի քանի այլ շրջանների առանձին ֆերմաներում, որտեղ կովերի գլխաքանակը 100—150 գլխից չի անցնում, պահվում են տարբեր քաշ և մթերատվության տարբեր մակարդակ ունեցող 4—5 ցեղի կովեր։ Նախրի այդպիսի կազմի պայմաններում հազիվ թե հնարավոր է արդյունավետ գործադրել կաթի արտադրության մեքենայական տեխնոլոգիան, որ ելնում է կովերի գլխաքանակի միատարրության պայմաններից։

Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմների և շրջգործկոմների հետ համատեղ, պետք է ավելի արագ լուծի այս կամ այն ցեղի կովերի բուծման հարցերը, ելնելով շրջանների ու տնտեսությունների կոնկրետ պայմաններից։

Շրջանների, կոլտնտեսությունների, սովխոզների միջտնտեսային ձեռնարկությունների և պետական համալիրների կուսակցական, սովետական, տնտեսական ղեկավարները իրենց ամենօրյա աշխատանքում պետք է ելնեն այն բանից, որ ցեղական լավ անասունները ապահովում են ոչ միայն անասնապահական մթերքների ավելացումը, այլև անասնակերի հսկայական խնայողություն, աշխատանքային ու նյութական ծախսումների ռեալ կրճատում, և պետք է ձեռնարկեն բոլոր միջոցները ցեղաբուծական աշխատանքը կատարելագործելու համար։

Գյուղատնտեսության մինիստրությունը, շրջկոմներն ու գործկոմները պարտավոր են, ըստ յուրաքանչյուր տնտեսության, շրջանի և դրա հիման վրա ամբողջ հանրապետության համար մշակել նախրի որակական վերափոխման հստակ ծրագիր։ Հարկավոր է պարզորեն որոշել նպատակը, թե ինչպիսի՞ ցեղերով, ինչպիսի՞ ժամկետներում և մթերատվության ի՞նչ մակարդակ է հնարավոր ապահովել, և ըստ այնմ միջոցառումներ մշակել։ Այդ պրոբլեմին պետք է մոտենալ ավելի մասշտաբային, առավել խոշոր պլանով, և ոչ թե այնպես, ինչպես արվում է այժմ, երբ նախատեսվում է յուրաքանչյուր տնտեսության գծով կովերի կաթնատվությունը բարձրացնել 10—20—50 կիլոգրամով։ Մենք պետք է ինչպես հարկն է ձեռնամուխ լինենք անասնապահության մթերատվության բարձրացմանը և այդ պրոբլեմը լուծենք այնպես, ինչպես այդ անում

են Լենինգրադի մարզում, որտեղ խնդիր է դրված կաթնատվությունը հասցնել 4.000 կիլոգրամի՝ նախրի հետագա որակական բարելավման, անասնապահության մասնագիտացման ու համակենտրոնացման միջոցով։

Անասնապահության հետագա զարգացման շահերը հրամայաբար պահանջում են արմատապես բարելավել ցեղաբուծական գործի կազմակերպումը։ Անհրաժեշտ է, որ պետպլանը և գյուղատնտեսության մինիստրությունը մշակեն ու կառավարության հաստատմանը ներկայացնեն առաջարկություններ ցեղաբուծական աշխատանքի միասնական սիստեմ ստեղծելու մասին։ Անհրաժեշտ է, որ ցեղաբուծական ծառայության բոլոր օղակները՝ գիտահետազոտական ինստիտուտները, տոհմային գործարանը, պետական տոհմաբուծական կայանները, տոհմաբուծական սովխոզները, կոլտնտեսություններն ու ֆերմաները, ինչպես նաև երինջների աճեցման բնագավառում մասնագիտացված ձեռնարկությունները ծառայեն միասնական նպատակի՝ հանրային նախրի ցեղական կազմի բարելավմանը, կոլտնտեսային և սովխոզային ֆերմաներին բարձրորակ ցեղական անասուններ մատակարարելուն։ Ընդսմին, յուրաքանչյուր ապրանքային ֆերմա նույնպես պարտավոր է կոնկրետ աշխատանք կատարել կենդանիների տոհմային հատկությունների բարելավման ուղղությամբ։

Անասնապահական մթերքների ապրանքային ռեսուրսների ոչ պակաս կարևոր ռեզերվ է անձնական օժանդակ տնտեսությունների հնարավորությունների լրիվ օգտագործումը։

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության առանձնահատկություններից ելնելով՝ անասնապահության զարգացման գլխավոր ուղղություններից մեկը եղել և մնում է մսի արտադրության ավելացումը՝ նպատակ ունենալով առավելագույն չափով կրճատել հանրապետության բնակչության պահանջմունքի և սեփական արտադրության միջև եղած խզումը։

Սակայն մեզանում դեռևս վատ են օգտագործվում մսի արտադրությունն ավելացնելու եղած ռեզերվները։

Ասվածի հաստատումն են հետևյալ տվյալները։ Եթե երկրում ամբողջությամբ վերցրած խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի հաշվով մսի ելքը կազմում է 96—103 կիլոգրամ, իսկ մեկ կովի հաշվով՝ 293—306 կիլոգրամ, ապա մեզ մոտ դա համապատասխանաբար կազմում է 62—75 կիլոգրամ և 186—226 կիլոգրամ։

Մեծ են անասնապահական մթերքների կորուստները ստացվող մատղաշների սահմանափակ թվի պատճառով։

Անցյալ տարի հանրապետությունում, ամբողջությամբ վերցրած, կովերի ստերջությունը կազմեց 24 տոկոս, մաքիներինը՝ 19 տոկոս։ Դրա հետևանքով հանրապետության տնտեսություններում պակաս ստացվեց 39 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն և 154 հազար մանր եղջերավոր անասուն։ Կալինինոյի, Գուգարքի, Ղուկասյանի, Ստեփանավանի, Սիսիանի, Ամասիայի և Թումանյանի շրջաններում կովերի ստերջությունը կազմում է 30—33 տոկոս։ Ժամանակն է գործնական միջոցներ ձեռք առնել մայրական գլխաքանակի ստերջությունը նվազագույնի հասցնելու համար։

Շատ տեղերում մեծ թվով փոքր քաշի կենդանիներ և մանավանդ մատղաշներ են մորթվում ներտնտեսական կարիքների համար։

Օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, քննարկելով ներտնտեսական կարիքների համար անասունների անհիմն ծախսում թույլ տալու հարցը, խիստ նախազգուշացրեց կուսակցության Ամասիայի, Վարդենիսի և Մարտունու շրջկոմների առաջին քարտուղարներ ընկ. ընկ. Ջ. Ալիևին, Ջ. Պողոսյանին, Մ. Նուրիջանյանին և նույն շրջանների գործկոմների նախագահներ ընկ. ընկ. Մ. Հակոբյանին, Ս. Ղազարյանին և Ջ. Կուրբանովին։ Մինիստրներ ընկ. ընկ. Թարջումանյանի ու Հովակիմյանի ուշադրությունը հրավիրեց իրենց ղեկավարած մինիստրությունների կողմից վերահսկողության բացակայության վրա։ Մենք այս հարցին այսպիսի կարևոր նշանակություն ենք տալիս, որովհետև ներտնտեսական կարիքների համար անասունների իրացման անվան տակ թաքցվում են անասունների անկման և շռայլման փաստերը, կատարվում զանազան մեքենայություններ։ Կուսակցության շրջկոմները, շրջգործկոմները տվյալ հարցը պետք է դարձնեն հատուկ քննարկման առարկա և խիստ վերահսկողություն սահմանեն մսի ապրանքային արտադրությունն ավելացնելու նկատառմամբ։ Մսի իրացումը ներտնտեսական կարիքների համար հարկավոր է և պետք է իրականացնել միայն պետական գնումների պլաններն անպայման կատարելուց հետո։ Ընդ որում, այդ նպատակով մորթվող անասունների քաշային կոնդիցիաները պետք է պետությանը վաճառվող անասունների կենդանի քաշից ցածր չլինեն։ Վերջին հանգամանքը հնարավորություն կտա՝ ապահովելու կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների հասարակական սնունդը բարձրորակ մսով։

Արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրությունը ինդուստրիալ հիմքի փոխադրելը իրական պայմաններ է ստեղծում թե՛ արտադրանքի որակը բարձրացնելու և թե որակի նկատմամբ վերահսկողության միասնական սիստեմ սահմանելու։

Կուսակցական, սովետական, գյուղատնտեսական, մթերող կազմակերպությունների, կոլտնտեսությունների և սովխոզների խնդիրն է՝ մշակել և իրականացնել արտադրանքի որակի բարձրացման միջոցառումների կոմպլեքս, դրանցում նախատեսելով արտադրության կատարելագործման և նրա տեխնոլոգիայի խստիվ կիրառման հարցերը, արտադրվող մթերքների որակի համար կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, տնտեսությունների մասնագետների ու ղեկավարների անձնական պատասխանատվության բարձրացման, ինչպես նաև նրանց բարոյական և նյութական խրախուսման հարցերը։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ անասնապահության մասնագիտացման և համակենտրոնացման, նրա ճյուղերի ինտենսիվացման նախատեսվող միջոցառումները սոսկ բարի մտադրություններ կմնան և ցանկալի արդյունք չեն տա, եթե մենք չլուծենք կերի կայուն, երաշխավորված բազայի ստեղծման պրոբլեմը։

Անցած տարիներին կերի բազայի անկայունության, կերով անբավարարության, նրա ցածր որակի պատճառով եղան արտադրանքի մեծ կորուստներ, իսկ հաճախ էլ՝ անասունների գլխաքանակի կորուստներ։

Իսկ դա նշանակում է, որ հանրապետությունում ամեն տարի հանրային նախրի համար պետք է կուտակվի մոտավորապես 700—800 հազար տոննա խոտ, 80—100 հազար տոննա խոտալյուր, մեկ միլիոն տոննա սիլոս, 500—600 հազար տոննա սենաժ, 300 հազար տոննա արմատապալարապտուղ։

Դա խիստ դժվարին, բայց իրագործելի խնդիր է։ Դրա համար անհրաժեշտ է, լայնորեն օգտագործելով հողերի մելիորացման հնարավորությունները, վերանայել կերային կուլտուրաների ցանքերի կառուցվածքը՝ նախատեսելով բազմամյա խոտաբույսերի, երեքնուկի, առվույտի, և սպիտակուցի բարձր պարունակություն ունեցող մյուս կուլտուրաների ցանքատարածությունների ընդարձակում, կազմակերպել սոյայի արտադրությունը ոռոգելի հողերում, լայնորեն արմատավորել եգիպտացորենի, կերի արմատապտուղների բարձր բերքատու սորտերն ու հիբրիդները. դաշտային կերարտադրության կուլտուրան բարձրացնելու միջոցով հասնել այն բանին, որ ապահովվի յուրաքանչյուր ոռոգելի հեկտարից 6.000—8.000 կերամիավորի ստացումը։

Պետք է ասել, որ վերջին երկու տարում գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմների մեծամասնությունը քիչ գործ չեն արել՝ կերի բազան ամրապնդելու առումով։ Այդ գործն անհրաժեշտ է շարունակել։ Մենք դեռ չօգտագործված շատ ռեզերվներ ունենք։

Կերի բազայի ամրապնդման կարևոր ռեզերվներից մեկն է բնական կերահանդակների արդյունավետության բարձրացումը։ Հայտնի է, որ գյուղատնտեսական հողատարածությունների 59 տոկոսը կամ 825 հազար հեկտարը բնական կերահանդակներ են, որոնց 18 տոկոսը խոտհարքներ են, 82 տոկոսը՝ արոտավայրեր։

Սակայն բնական կերահանդակների, մանավանդ արոտավայրերի օգտագործման ոչ ճիշտ եղանակները, դրանց մակերեսային և արմատական բարե-

*չավման միջոցառումների ողջ կոմպլեքսը չապահովելը հասցրել են նրանց արդյունավետության էական նվազեցման, ճմածածկույթի ոչնչացման, էրոզիոն պրոցեսների առաջացման: Անցյալ տարի, հատկապես Կալինինոյի շրջանի արոտավայրերում, մենք ականատես եղանք, թե ինչպիսի անմխիթար վիճակում են գտնվում դրանք: Արոտավայրերի տարածության կեսից ավելին ծածկըված է տատասկով ու գուղձերով: Արոտավայրերի վիճակը լավ չէ նաև մյուս շրջաններում: Դրա հետևանքով հանրապետության արոտավայրերի միջին բերքատվությունը 10—12 ցենտներ կանաչ զանգվածից չի գերազանցում:*

*Գարնան և աշնան շրջանում սիստեմատիկ արածեցման, պահանջվող չափերով հողը չսնուցելու հետևանքով խոտհարքների մեծամասնության բերքատվությունը նույնպես շատ ցածր է՝ հեկտարից 12—18 ցենտներ:*

*Նույն՝ Կալինինոյի, ինչպես նաև Ստեփանավանի և Սիսիանի շրջանների առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ կուլտուր-տեխնիկական և մարգագետնային մելիորատիվ աշխատանքների ճիշտ կազմակերպման դեպքում բնական կերահանդակների բերքատվությունը խոտհարքներում կարելի է հասցնել հեկտարից 30—40 ցենտների: Ապահովել հենց այդ մակարդակը՝ ահա այն խնդիրը, որ Հայաստանի Կոմկուսի Կենտկոմը դնում է հանրապետության գյուղատնտեսական մարմինների առջև: Բնական կերահանդակների օգտագործման արդի վիճակը և դրանց արմատական բարելավման շահերը հրամայաբար պահանջում են հանրապետությունում ստեղծել մարգագետնամելիորատիվ մասնագիտացված ծառայություն, այնտեղ կենտրոնացնելով անհրաժեշտ բոլոր օղակներն ու ծառայությունները:*

*Ինչո՞ւ ենք մենք այդպես սուր դնում հարցը: Անասնապահության և մանավանդ ոչխարաբուծության ամբողջ արտադրանքի մոտավորապես երկու երրորդը մենք ստանում ենք արոտային պահվածքի շրջանում, էժան կերով: Այստեղից էլ մենք պետք է ելնենք բնական կերահանդակներին ցույց տրվող մեր վերաբերմունքի հարցում:*

*Ձեր ուշադրությունը հարկ է հրավիրել կերի բազայի ամրապնդման ևս մի կողմի վրա: Խոսքը վերաբերում է կերի որակին և կերակրման տեխնոլոգիային: Բանն այն է, որ մեզ մոտ՝ տեղերում և, ցավոք, ոչ միայն տեղերում, ընդունված է կերով ապահովված լինելը որոշել միայն քանակային տեսանկյունից: Եվ շատ քիչ տեղերում են անհանգստանում անասունների համար լիարժեք կերաբաժին և կերակրման տեխնոլոգիան ապահովելու հարցերով: Դրա հետևանքով կերային սուղ պաշարների պայմաններում մենք արտադրանքի միավորի վրա շատ ավելի կեր ենք ծախսում, քան նախատեսված է գիտականորեն հիմնավորված նորմաներով և առաջավոր տեխնոլոգիայով: Երկրի և հանրապետության առաջավոր տնտեսությունների փորձը ցույց է տալիս, որ միայն կերերի հաշվեկշռման, լիարժեք կերաբաժնի շնորհիվ կարելի է ստանալ անասնապահական մթերքների տեսակարար քանակության 30—40 տոկոս հավելում: Սակայն տնտեսություններում առկա ագրոանասնաբուժական ծառայության ցածր մակարդակի հետևանքով մենք շարունակում ենք աննպատակ ծախսել վիթխարի ջանքերի գնով կուտակված անասնակերը:*

*Գյուղատնտեսության մինիստրությունից և նրա գիտական ստորաբաժանումներից, տնտեսությունների ղեկավարներից և մասնագետներից պահանջվում է անհետաձգելի միջոցներ ձեռնարկել՝ բարձրացնելու կերի օգտագործման արդյունավետությունը, ներառյալ կերաբաժնի հարցերը, դրա համար օգտագործելով բաղադրատարրերի ճիշտ ընտրությունը, սպիտակուցի լրացումը, կերի պարտադիր նախապատրաստումը կերակրման համար և ուրիշ շատ գործոններ:*

*Այս իմաստով կարևոր նշանակություն ունի հանրապետության անասնապահական բոլոր տնտեսություններում կերարտադրամասերի և կերախոհանոցների շինարարությունը:*

*Օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների սովետը քննության առան հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում կերի արտադրամասեր կառուցելու հարցը: Գյուղատնտեսության մինիստրությանը հանձնարարված է սննդարդյունաբերության մինիստրության և անտառային տնտեսության պետական կոմիտեի հետ համատեղ մշակել և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին ներկայացնել կերի արտադրամասերի տեղաբաշխման սխեման և շինարարության ժամկետների սահմանումը՝ նկատի ունենալով ապահովել, որ մինչև 1980 թվականը հանրապետության կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում լրիվ վերամշակվեն կոշտ և հյութալի կերերը, հաշվի առնելով կերի արտադրամասերի տիպերի ճիշտ ընտրությունը՝ առանձին տնտեսությունների համար և կերի վերամշակման կազմակերպումը միջտնտեսային կոոպերացման հիման վրա:*

*Գյուղական և արդյունաբերական շինարարության մինիստրությունները (ընկ. ընկ. Գ. Թադևոսյան և Կ. Հակոբյան), գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, կուսակցության շրջկոմները և շրջգործկոմները պետք է խիստ վերահսկողություն սահմանեն կերի արտադրամասերի կառուցման ընթացքի նկատմամբ և ապահովեն դրանց գործարկումը ժողովրդատնտեսական պլանով սահմանված ժամկետներում:*

*Կերի բազայի ամրապնդման մեծ ռեզերվ է կուտակվող կերի որակի բարձրացումը, ամենից առաջ նվազեցնելով նրա սննդարար արժեքների կորուստները հավաքման և պահպանման ժամանակ: Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները, շրջգործկոմները, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները պետք է անհապաղ ստեղծեն կուտակվող կերի որակի վերահսկման գործուն սիստեմ:*

***

*Մեր հանրապետության գյուղատնտեսության կարևորագույն ճյուղերին են պատկանում խաղողագործությունն ու պտղաբուծությունը, որոնք մեծապես որոշում են Հայկական ՍՍՀ-ի տեղը աշխատանքի ընդհանուր-միութենական բաժանման մեջ:*

*Խաղողագործության և պտղաբուծության զարգացման արդի մակարդակը չի բավարարում արդյունաբերության և բնակչության հարաճուն պահանջները: Ուստի այդ ճյուղերի հետագա ինտենսիվացման հարցերը դրվում են առաջին պլանի վրա:*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հուլիսյան պլենումները, ամենայն սկզբունքայնությամբ բացահայտելով խաղողագործության բնագավառում եղած թերությունները, նշեցին դրանց հաղթահարման ուղիները՝ նոսրության վերացումը, տարածությունների ընդարձակումը և մշակույթային ագրոտեխնիկական պահանջների խստիվ կիրառումը:*

*Այդ պլենումներից հետո գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջանային կոմիտեները, շրջգործկոմները, հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները որոշակի աշխատանք կատարեցին այդ կարևորագույն ճյուղերում դրությունը բարելավելու նպատակով: Միայն անցած տարի՝ 1976 թվականին, հիմնվեցին խաղողի մոտավորապես 2.000 հեկտար նոր այգիներ, որը շատ ավելին է, քան անցած հնգամյակում գցված բոլոր այգիների տարածությունը: 12 հազար հեկտար այգիներում վերացվեց նոսրությունը: Վերջին երկու տարում հանրապետության կոլտնտեսություններում և պետական տնտեսություններում, անցած հնգամյակի տարեկան միջին ցուցանիշների համեմատությամբ, խաղողի համախառն արտադրությունն ավելացավ 26 հազար տոննայով, իսկ միջին բերքատվությունը՝ հեկտարից 12 ցենտներով: Եվ դա՝ միմիայն մշակության ագրոտեխնիկան ավելի լավ կիրառելու շնորհիվ: Տնկվում են պտղի նոր այգիներ:*

*Սակայն այսօր էլ հանրապետությունում խաղողագործության և պտղաբուծության վիճակը շարունակում է խիստ անհանգստացնել:*

*Եթե խաղողագործության և պտղաբուծության գործերի վիճակը գնահատենք քննարկվող հարցի առումով, ապա հարկ կլինի ասել, որ դրանց մասնագիտացման ու համակենտրոնացման աստիճանը բնավ չի համապատասխանում այդ ճյուղերի ինտենսիվ վարման պահանջներին:*

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը վկայակոչում է խաղողի և պտղատու այգիների մասնատվածությունը, ցածր բերքատվությունը բնութագրող թվեր ու փաստեր։

Շատ շրջաններում պտղատու այգու մեկ հեկտարի եկամտաբերությունը չի գերազանցում 150—200 ռուբլուց։ Պտղաբուծության համակենտրոնացման և զոնալ մասնագիտացման մակարդակը ամենևին էլ չի համապատասխանում այդ ճյուղի ինտենսիվ վարման պահանջներին։

Հանրապետության խաղողագործության և պտղաբուծության առջև խնդիր է դրված՝ ապահովել խաղողի և պտուղների մատակարարումը հանրապետության բնակչությանը, ընդլայնել գինու-կոնյակի և պահածոյի արդյունաբերության հումքային բազան, մեծացնել ընդհանուր-միութենական ֆոնդի համար թարմ վիճակում խաղողի և պտուղների մատակարարումների ծավալը։

Այդ խնդրի լուծման համար, ամենահամեստ հաշվարկումներով, անհրաժեշտ կլինի խաղողի համախառն բերքը, հեռանկարային առումով, հասցնել 350—400 հազար տոննայի, իսկ պտուղներինը՝ 250—300 հազար տոննայի։

Իսկ որո՞նք են մեր խնդիրները խաղողագործության և պտղաբուծության բնագավառում։

Առաջին հերթին՝ նոր ոռոգվող հողերում ստեղծել խոշոր զանգվածներ։ Խոսքը վերաբերում է Ազատի, Ջողազի, Ախուրյանի ջրամբարների ընդգրկած հողատարածություններին, իսկ հետագայում նաև Արարատյան դաշտավայրի մելիորացված աղուտներին և գերխոնավ հողերին։

Հետագայում պտղատու այգիների, իսկ առանձին շրջաններում նաև խաղողի այգիների տարածությունների ընդլայնման կարևոր ռեզերվ է նաև լանջերի յուրացումը տնկարկների համար՝ դարավանդացման մեթոդով, անպայման հաշվի առնելով հիմնական արտադրական պրոցեսների մեքենայացման պահանջները։ Այստեղ արտադրությանը հարկավոր է գիտության անմիջական օգնությունը՝ անհրաժեշտ է մշակել դարավանդների վրա այդ ճյուղերի ինտենսիվ վարումն ապահովող ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը։

Արտադրության հիմնական, կազմավորված գոտիների հետ մեկտեղ խաղողագործության համեմատաբար խոշոր բազա պետք է դառնա հյուսիսարևելյան գոտին՝ Իջևանի, Շամշադինի և Նոյեմբերյանի շրջանները։ Ճյուղը նշանակալի զարգացում կստանա նաև նախալեռնային գոտում։

Կորիզավոր պտուղների ապրանքային արտադրության գոտին առաջվա պես կմնա Արարատյան հարթավայրը և Նոյեմբերյանի շրջանը, իսկ հնդավոր պտուղներինը՝ նախալեռնային և մնացած շրջանները։

Բազմամյա տնկարկների տարածությունների ընդարձակման հետ մեկտեղ կարևորագույն նշանակություն ունի նրանց բերքատվության բարձրացումը։

Մեծ նշանակություն կունենա նաև խաղողի և պտուղների տեսակային ճիշտ շրջանացումը՝ ելնելով բնական ու տնտեսական պայմաններից։

Խաղողի և պտուղների երաշխավորված բերք ապահովելու գործում առաջնահերթ նշանակություն ունի բարձր բերքատու, ցրտադիմացկուն սորտերի տարածությունների հետևողական ընդարձակումը։ Եվ այստեղ մեծ խնդիրներ են ծառացած ոչ միայն մեր գիտնականների՝ սելեկցիոներների առջև, որոնցից մենք սպասում ենք բարձրորակ ցրտադիմացկուն նոր սորտեր՝ բարձր պոտենցիալ բերքատվությամբ, այլև մեր տնտեսավարների առջև, որոնք պետք է արտադրության մեջ ավելի համարձակորեն և լայնորեն արմատավորեն հայրենական և արտասահմանյան սելեկցիայի սորտերի փորձարկված լավագույն նմուշները։

Հանրապետության խաղողագործության և պտղաբուծության ինտենսիֆիկացման շահերը պահանջում են ստեղծել բարձր արդյունավետ պտղատու և խաղողի այգիների խոշոր զանգվածներ՝ առավելագույն չափով մեքենայացնելով մշակությունն ու բերքահավաքը։ Այդ աշխատանքներն արդեն սկսվել են Աշտարակի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Արարատի և այլ շրջաններում։ Անհրաժեշտ է, որ գյուղատնտեսության մինիստրությունը, շրջկոմներն ու շրջգործկոմները այսուհետ ևս չթուլացնեն իրենց ուշադրությունը այդ կարևոր գործի նկատմամբ։ Անցյալի սխալներից խուսափելու համար հանրապետության կառավարությունը պետք է մշակի և հաստատի խաղողագործության և պտղաբուծության տեղաբաշխման ու զարգացման գիտականորեն հիմնավորված գլխավոր սխեման՝ հեռանկարային ընդգրկումով։



Չնայած տվյալ ճյուղերում եղած ագրոարդյունաբերական ինտեգրացման մեծ նախադրյալներին, մեր հանրապետությունում պրակտիկ միջոցներ չեն իրականացվում այդ ուղղությամբ։ Այստեղ մենք անելիքներ շատ ունենք։

Անառարկելի ճշմարտություն է, որ խաղողագործության և պտղաբուծության ինտենսիվացումը աներևակայելի է, առանց խաղողի և պտուղների ինտենսիվ, ցրտադիմացկուն, վարակամերժ սորտերի տնկանյութի արդյունաբերական արտադրությունը կազմակերպելու։

Ստեղծված դրությունը հրամայաբար պահանջում է, որ հանրապետությունում լուծվի խաղողի և պտղատու կուլտուրաների տնկանյութի արտադրության գիտաարտադրական միավորում կազմակերպելու հարցը՝ նպատակ ունենալով լրիվին ապահովել հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների պահանջմունքը՝ այդ ճյուղերի զարգացման գլխավոր սխեմային համապատասխան։

***

Բանջարաբուծությունը հանրապետության գյուղատնտեսության առաջատար ճյուղերից է։ Վերջին տարիներս զգալի աշխատանք է կատարվել այդ ճյուղի ինտենսիվացման և բանջարեղենի արտադրության ծավալների մեծացման նպատակով։

Սակայն հանրապետության բանջարաբուծության վիճակի համակողմանի խոր վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ կարևոր ճյուղում քիչ չեն թերությունները ու վրիպումները։

Չնայած այն բանին, որ հանրապետության պլանային ու գյուղատնտեսական մարմինները որոշակի աշխատանք են կատարել ջերմասեր բանջարեղենի արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման ուղղությամբ՝ ելնելով հողակլիմայական պայմաններից, ինչպես նաև տնտեսական արդյունավետությունից (համախառն արտադրության ավելի քան 85 տոկոսը կենտրոնացված է Արարատյան դաշտավայրի շրջաններում), այնուամենայնիվ, հանրապետությունում բանջարեղենի ապրանքային արտադրությամբ դեռևս զբաղված են 35 շրջանների տնտեսություններ։

Ճյուղի տնտեսական արդյունավետությունը շատ բանով նվազում է ցածր բերքատվության պատճառով։ Հանրապետության պետպլանը, գյուղատնտեսական մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է անհապաղ քննության առնեն այդ հարցը և ձեռնարկեն համապատասխան միջոցներ։

Բանջարաբուծության ապրանքայնության և արդյունավետության բարձրացումը արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու նրա քիմիացման լայնորեն արմատավորման հիման վրա հնարավոր է միայն մասնագիտացման ու համակենտրոնացման խորացման դեպքում։ Այստեղ իր ողջ կարևորությամբ դրվում է ներշրջանային և ներտնտեսական մասնագիտացման խնդիրը։

Մասնագիտացված տնտեսությունները պետք է ապահովված լինեն անհրաժեշտ տեխնիկայի ու սարքավորումների կոմպլեքսով, բոլոր տեսակի պարարտանյութերով ու հերբիցիդներով, համապատասխան հարմարանքներով, այն հաշվով, որ այս տնտեսություններում առավել բարձր լինի բանջարաբուծության արդյունավետությունը, ապահովված լինի կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռությունը։

Բանջարեղենի արտադրությունը պետք է անընդհատ ավելանա և լրիվին բավարարի հանրապետության բնակչության աճող պահանջմունքները։ Բացի դրանից, բանջարեղենով պետք է բավարարի պահածոյի արդյունաբերության աճող պահանջմունքը և թարմ վիճակում նրա (հարավային սորտերը) հարաճուն արտահանությունը երկրի արդյունաբերական կենտրոններ։

Ուստի, Կենտկոմի պլենումը պետք է հանրապետության պլանային և գյուղատնտեսական մարմիններից, շրջանային կուսակցական, սովետական և գյուղատնտեսական կազմակերպություններից պահանջի՝ անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել զգալիորեն ընդլայնելու այդ կուլտուրաների արտադրությունը ինչպես ցանքատարածությունների ավելացման, այնպես էլ ճյուղի մասնագիտացման և համակենտրոնացման հիման վրա բերքատվության բարձրացման հաշվին:

Հայտնի է, որ մեր հանրապետության կլիմայական պայմանները խիստ բարենպաստ են պաշտպանված գրունտի բանջարաբուծության լայն զարգացման համար: Ելնելով դրանից, ինչպես նաև նպատակ ունենալով հանրապետության և երկրի արդյունաբերական կենտրոնների բնակչությանը թարմ բանջարեղենով ապահովելը, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, համակողմանիորեն ուսումնասիրելով ջերմատնային բանջարեղենի արտադրության ծավալների խիստ ավելացման հնարավորություններն ու տնտեսական նպատակահարմարությունը, միջոցներ է ձեռնարկում ջերմատնային տնտեսությունը մեծ չափերով ընդարձակելու համար:

Ընկերնե՛ր: Բանջարեղենի արտադրության ավելացումը ինքնանպատակ չէ: Դա արվում է բնակչության և պահածոյի արդյունաբերության հարաճուն պահանջմունքները բավարարելու համար: Ցավոք, չնայած բանջարեղենի արտադրության անընդհատ աճին, մենք դեռ հաճախ լսում ենք բնակչության օրինական գանգատը, որը բանջարեղենի ցածր որակի, նրա աղքատ տեսականու, մատակարարումների անհամաչափության և առևտրի կանոնների խախտումների հետևանք է: Բանջարեղենի մասսայական հավաքման ու վերամշակման շրջանում փոխադարձ մեծ պահանջներ են ներկայացնում մի կողմից՝ կոլտնտեսություններն ու սովխոզները, մյուս կողմից՝ պահածոյի արդյունաբերության ու առևտրական կազմակերպությունները:

Հանրապետության կառավարությունը պետք է համակողմանիորեն ուսումնասիրի և համապատասխանորեն լուծի այս հարցը:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը վերջին ժամանակներս առաջնահերթ նշանակություն են տալիս կարտոֆիլի արտադրությունն ավելացնելու և սեփական արտադրության հաշվին բնակչության պահանջմունքները բավարարելու հարցերին: 1976 թվականին հանրապետությունում մթերվեց 50 տոկոսով ավելի կարտոֆիլ, քան իններորդ հնգամյակում մթերված տարեկան միջինը, սակայն ձեռք բերված մակարդակը ամենևին չի համապատասխանում մեր պահանջմունքներին: Ցածր է կարտոֆիլի մշակման կուլտուրայի մակարդակը, չափից ավելի մանրատված են ցանքաշրջանառությունները, բարձիթողի վիճակում է սերմնաբուծությունը, արտադրական պրոցեսներում գերակշռում է ձեռքի աշխատանքը: Հենց դրանով պետք է բացատրել այն, որ Իջևանի, Գուգարքի, Վարդենիսի և Թումանյանի շրջաններում անցյալ տարի կարտոֆիլի միջին բերքատվությունը կազմեց հեկտարից 45—59 ցենտներ: Իսկ առանձին տնտեսություններում դրությունն ավելի վատ է:

Մի շարք տնտեսությունների աշխատանքի փորձը մեզ իրավունք է տալիս այսօր հանրապետության կարտոֆիլաբուծական տնտեսությունների առջև խնդիր դնել՝ կարտոֆիլի բերքատվությունը հասցնել հեկտարից առնվազն 200 ցենտների, այն հաշվով, որ ամենամոտ ժամանակներս լուծվի տեղական արտադրության կարտոֆիլով բնակչության պահանջմունքները բավարարելու հարցը: Ուստի կարտոֆիլաբուծության մակարդակի բարձրացումը ամենաանհետաձգելի խնդիրներից մեկն է:

Արտադրության հետագա մասնագիտացումը և համակենտրոնացումը, մշակության բարձր կուլտուրան, որը ենթադրում է ոչ միայն ագրոտեխնիկայի առաջադրանքների խստիվ կատարում, այլև մշակության և բերքահավաքի կոմպլեքսային մեքենայացում, պոտենցիալ բարձր բերքատվություն ունեցող վարակամերժ նոր սորտերի լայն ներդրումը, ինչպես նաև կարտոֆիլի ցանքատարածությունների կանոնավոր ոռոգումը հնարավորություն կընձեռի հնգամյակի վերջում այդ կուլտուրայի համախառն բերքը հասցնել 150 հազար տոն-



նայի, իսկ հետագայում՝ 200—250 հազար տոննայի: Ընդ որում, հարկավոր է հաշվի առնել, որ այսուհետ ևս կարտոֆիլ արտադրող հիմնական գոտիներն են մնալու Սևանի ավազանը և Լոռի-Փամբակը: Դրա հետ մեկտեղ, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, բնակչությանը վաղահաս կարտոֆիլ մատակարարելու և համամիութենական ֆոնդերի հատկացումներն ապահովելու հարցի լուծման համար հարկավոր է վաղահաս կարտոֆիլի ցանքատարածություններն ընդլայնել Արարատյան դաշտավայրի տնտեսություններում և նրա նախալեռնային գոտու առանձին վայրերում:

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, «Հայգլխջրշինը», կարտոֆիլացան շրջանների կուսշրջկոմները և շրջգործկոմները, տնտեսությունների ղեկավարներն ու մասնագետները պետք է գործնական միջոցներ ձեռնարկեն՝ բարելավելու կարտոֆիլի մշակության սիստեմը, սերմնաբուծության գործը, արդյունավետ օգտագործելու օրգանական և հանքային պարարտանյութերը, բարձրացնելու մշակության մեքենայացման մակարդակը՝ խստիվ կիրառելով բարձր ու կայուն բերքի ստացումն ապահովող միջոցառումների ամբողջ կոմպլեքսը:

Հանրապետության բնակչության անխափան ապահովումը թարմ պտուղներով և խաղողով, բանջարեղենով և կարտոֆիլով՝ թելադրում է ժամանակակից բարձր մեքենայացված, մասնագիտացված պահեստարաններ ստեղծելու անհրաժեշտությունը:

Քննության առնելով ծխախոտի արտադրության հարցերը, մենք պետք է առաջին հերթին ելնենք համապետական շահերից:

Չնայած զոնալ մասնագիտացման բնագավառում կատարված որոշ դրական աշխատանքին, ծխախոտագործության մեջ մենք դեռ շատ պրոբլեմներ ունենք, որոնք անհետաձգելի լուծում են պահանջում:

Տնտեսությունների որոշ ղեկավարներ ու մասնագետներ, տարվելով քանակական ցուցանիշներով, խախտում են ծխախոտի մշակության ագրոտեխնիկան, չեն ապահովում բերքահավաքին հաջորդող աշխատանքների բարձր որակը: Ծխախոտի որակը բարձրացնելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը 1975 թվականի հուլիսին հատուկ որոշում ընդունեցին «Ծխախոտի կոմբինացված չորանոցային կայանքները արտադրության մեջ ներդնելու միջոցառումների մասին»:

Պետպլանը, վերոհիշյալ մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ, պետք է շատ կարճ ժամանակամիջոցում միջոցներ մշակի հանրապետության բոլոր ծխախոտացան տնտեսությունները չորանոցային անհրաժեշտ կարողություններով ապահովելու համար:

Վերջին տարիներս հանրապետությունում որոշ աշխատանք է կատարվել հացահատիկի արտադրությունն ավելացնելու բնագավառում: Այստեղ նույնպես լուծված է հացահատիկային տնտեսության զոնալ մասնագիտացման հարցը: Սակայն այդ ճյուղի անբավարար ինտենսիվացման պատճառով հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը շրջանների մեծ մասում մնում է ցածր: Հողակլիմայական և օդերևութաբանական անբարենպաստ պայմանների վերաբերյալ առանձին շրջանների և տնտեսությունների ղեկավարների պատճառաբանությունները անհիմն են: Այնտեղ, որտեղ լավ են աշխատել, արդյունքները միշտ էլ առկա են: Իսկ լավ աշխատել՝ նշանակում է ժամանակին, լավագույն ժամկետներում, բարձր որակով կատարել ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսը:

Հողագործության բարձր կուլտուրայի պայմաններում (այստեղ առաջին հերթին նկատի է առնվում մաքուր ցելի որակյալ մշակումը և ցրտահերկը) ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կոնդիցիոն սերմացուի ցանումը լավ պարարտացված հողում հնարավորություն կտա խիստ ավելացնել հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը, հանրապետությունում այն հասցնել հեկտարից միջին հաշվով 30—35 ցենտների: Ահա այն խնդիրը, որ կանգնած է հանրապետության հողագործների առջև:

Հանրապետության որոշ շրջանների հողակլիմայական պայմանները բացառիկ բարենպաստ են եթերայուղային կուլտուրաների, մասնավորապես խորդենու մշակության համար: Ներկայումս խորդենու արտադրության ասպարեզում մասնագիտացել են Հոկտեմբերյանի և էջմիածնի շրջանների տնտեսությունները: Այդ շրջանների կոլտնտեսությունների և սովխոզների, վերամշակող արդյունաբերության խնդիրն է՝ հետևողականորեն բարձրացնել այդ խիստ եկամտաբեր կուլտուրայի բերքատվությունը, ավելացնել յուղանյութը, ագրոտեխնիկան, սելեկցիոն աշխատանքը բարելավելու, կանաչ զանգվածից յուղի կորզման տեխնոլոգիան կատարելագործելու հիման վրա: Այստեղ հասունացել է արտադրական միավորում ստեղծելու հարցը:

Հանրապետության բուսաբուծության առանձին ճյուղերի ետ մնալու հիմնական պատճառներից մեկը հացահատիկային կուլտուրաների, կարտոֆիլի և բազմամյա խոտաբույսերի սելեկցիայի ու սերմնաբուծության անբավարար վիճակն է: Արտադրության մեջ առայժմ դեռ մշակվում են գյուղատնտեսական կուլտուրաների այնպիսի սորտեր, որոնք անկայուն են պառկելու և հիվանդությունների նկատմամբ: Արտադրության մեջ դանդաղ են ներդրվում տեղական սելեկցիայի բարձր բերքատու սորտերը: Գյուղատնտեսության մինիստրությունը և նրա տեղական մարմինները տարեցտարի չեն ապահովել սորտափոխման և սորտանորացման պլանների կատարումը, իսկ շրջանների մեծ մասում առհասարակ այդպիսի պլաններ չեն կազմվում:

Սերմնաբուծության ասպարեզում դանդաղ են իրականացվում արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման, այն արդյունաբերական հիմքերի վրա փոխադրելու միջոցառումները:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների սովետը գյուղատնտեսական կուլտուրաների սելեկցիայի և սերմնաբուծության հետագա բարելավման նպատակով վերջերս քննության առան այդ հարցը և ընդունեցին համապատասխան որոշում, որով մասնավորապես նախատեսված է հանրապետությունում կազմակերպել սորտասերմնաբուծական միավորում՝ նրա անմիջական ենթակայությանը հանձնելով անհրաժեշտ քանակությամբ մասնագիտացված սերմնաբուծական տնտեսություններ:

Գյուղատնտեսության մինիստրությունը, կուսակցության շրջկոմները և շրջանային գործադիր կոմիտեները բոլոր միջոցները պետք է ձեռնարկեն անհապաղ լուծելու այդ որոշմամբ նախատեսված խնդիրները, այն հաշվով, որ հանրապետությունում ստեղծվի սերմնաբուծության կուռ սիստեմ, որը հուսալիորեն երաշխավորի տնտեսությունների լրիվ ապահովումը բարձրորակ սերմացուով:

Հանրապետության արտադրողական ուժերի զարգացումը, զոնալ մասնագիտացման խորացումը և գյուղատնտեսական արտադրության համակենտրոնացման մակարդակի բարձրացումը ստեղծում են օբյեկտիվ պայմաններ ագրարային-արդյունաբերական ինտեգրացում կատարելու համար:

Պետպլանը, գյուղատնտեսության մինիստրությունը, սննդարդյունաբերության մինիստրությունը, մթերումների մինիստրությունը, մսեղենի ու կաթնեղենի արդյունաբերության մինիստրությունը և անտառային տնտեսության պետական կոմիտեն պետք է մշակեն և հանրապետության կառավարությանը ներկայացնեն առաջարկություններ գյուղատնտեսական արտադրության, սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ագրոարդյունաբերական ինտեգրացման վերաբերյալ:

Գյուղատնտեսական արտադրության շեշտակի վերելքի վերցված կուրսի շրջանակներում ՍՄԿԿ XXV համագումարը առաջ քաշեց նրա արդյունավետությունը խիստ բարձրացնելու, բոլոր որակական ցուցանիշները բարելավելու խնդիրը: Խոսքն այն մասին է, որ խելացիորեն, տնտեսաբար օգտագործվեն այն հսկայական ռեսուրսները, որ պետությունը հատկացնում է գյուղատնտեսության զարգացման համար, խնամքով վերաբերվել հողին, հասնել յուրաքանչյուր հեկտարի, ներդրված յուրաքանչյուր ռուբլու, պարարտանյութերի յուրա-



քանչյուր տոննայի առավելագույն փոխհատուցման, անշեղորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը:

Հանրապետության գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման միջոցառումները, մասնավորապես նոր մասնագիտացված տնտեսությունների ստեղծումը, հողագործական և անասնապահական մթերքների արտադրության ու գնումների ծավալի խիստ մեծացումը կազմված են՝ հաշվի առնելով նոր մելիորացված հողատարածությունների ընդարձակումն ու յուրացումը, նրանց օգտագործման համակողմանի բարելավումը, ջրատնտեսական շինարարության լայն թափը:

Հողերի ոռոգելի ֆոնդի նկատմամբ անտնտեսվար և անփույթ վերաբերմունքի մասին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1975 թվականի հունվարյան և հաջորդ պլենումներում եղած քննադատությունից հետո շրջանային կուսակցական և գյուղատնտեսական շատ մարմիններ համապատասխան հետևություններ արեցին և ձեռնարկեցին մի շարք կազմակերպական-տնտեսական միջոցներ՝ ոռոգելի գյուղատնտեսական հողատարածությունների ինտենսիվ, առավել արդյունավետ օգտագործման նպատակով:

Չնայած այդ տեղաշարժերին, մելիորացված հողատարածություններում գյուղատնտեսական արտադրությունը վարելու մակարդակը դեռևս չի համապատասխանում ինտենսիվ հողագործության պահանջներին:

Կենտրոնական կոմիտեն պետպլանից և համապատասխան մինիստրություններից պահանջում է ամենակարճ ժամանակում գործնական ներդրման համար հանձնարարականներ և առաջարկություններ ներկայացնել բոլոր ոռոգելի հողերի արդյունավետ և լիարժեք օգտագործման վերաբերյալ: Հարկավոր է նաև աշխատանքներ ծավալել ջրովի գյուղատնտեսական հողատարածությունների պասպորտիզացիայի ուղղությամբ՝ նպատակ ունենալով ի հայտ բերել դրանց գործնական արժեքը, իրական պատկանելությունը հողերի ոռոգելի ֆոնդին և կարգավորել այդ հողատարածությունների հաշվառումը:

Կենտկոմը հատուկ նշանակություն է տալիս Արարատյան դաշտավայրի աղուտների և գերխոնավ հողերի գյուղատնտեսական յուրացմանը:

Այդ պրոբլեմը պետք է դառնա հանրապետության կառավարության հատուկ քննարկման առարկա:

Բազմիցս առաջադրվել է հանրապետության հողերը ջրային և հողմային էռոզիայից պաշտպանելու պրոբլեմը: Էռոզիական պրոցեսների կանխման հարցում անպատասխանատվությունը և այդ միջոցառումների թերագնահատումը տնտեսական էական վնաս են հասցնում գյուղատնտեսական արտադրությանը: Հատկապես մեծ կորուստներ են տեղի ունենում ջրային էռոզիայի պատճառով, որը պայմանավորված է ինչպես հանրապետության բնակլիմայական և ռելիեֆային օբյեկտիվ ու յուրահատուկ պայմաններով, այնպես էլ համապատասխան կազմակերպությունների ղեկավարների անտնտեսվարությամբ:

Այժմ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում առկա է տարբեր տիպի էռոզիայի ենթարկված տասնյակ հազար հեկտար հողատարածություն: Թվում է, թե նման վիճակը պետք է ուշադրություն գրավեր և զգաստացներ շրջանային կուսակցական կազմակերպություններին ու գյուղատնտեսական արտադրության ղեկավարներին: Ցավոք, այդ փաստի նկատմամբ անտարբերություն գոյություն ունի: Այլապես ինչո՞վ բացատրել, որ միայն 1976 թվականին հանրապետությունում հակաէռոզիոն միջոցառումների համար նախատեսված պետական ներդրումներն իրացվեցին ընդամենը 63 տոկոսով:

Պրակտիկան ցույց է տալիս, որ հակաէռոզիոն միջոցառումներ իրականացնող կազմակերպությունների առկա տարանջատվածությունը իրեն չի արդարացնում: Ըստ երևույթին ժամանակն է հանրապետությունում ստեղծելու հակաէռոզիոն միջոցառումների ամբողջ կոմպլեքսի իրականացման մասնագիտացված կազմակերպություն:

Այս ուղղությամբ լուրջ թերություններ կան նաև հանրապետության անտառային տնտեսության պետական կոմիտեի (ընկ. Հ. Ավագյան) և նրա տե-

ղական կազմակերպությունների աշխատանքում: Կենտկոմը առաջիկայում կանդրադառնա կոմիտեի գործունեությանը և միջոցառումներ կնշի այն արմատապես բարելավելու համար:

Վերջին տարիների ջրատնտեսական շինարարությունը բնութագրվում է արագ տեմպերով: Սակայն նախագծային մշակումների և շինարարության ցածր որակի պատճառով հանրապետությունում տարբեր ժամկետներում շահագործման հանձնված 45 ջրամբարներից միայն 10-ն են համապատասխանում նորմալ շահագործման պահանջներին: Ոռոգման սիստեմների բարձիթողի վիճակի պատճառով ջրի մեծ կորուստներ են լինում:

Եթե դրան ավելացնենք, որ հանրապետությունում փաստորեն խիստ անբավարար է ընթանում գյուղատնտեսական կուլտուրաները ջրելու առաջադիմական եղանակներն արմատավորելու ուղղությամբ տարվող աշխատանքը, ապա պարզ կդառնա, թե որքան շռայլորեն ենք մենք վարվում բերրիության այդ կարևոր աղբյուրի նկատմամբ: Հարց է ծագում՝ իսկ որքա՞ն պետք է հիշեցնել և նախազգուշացնել ջրային տնտեսության մինիստրության ղեկավարությանը (ընկ. Բաղրամյանին), որ ժամանակն է տեսական դատողություններից անցնել գործնական միջոցառումների իրականացման: Սովորաբար մինիստրության և մի շարք շրջանային կազմակերպությունների պատճառաբանությունները հիմք չունեն: Դրանք կարելի է և պետք է ընդհանրացնել միանշանակ բառով՝ անտնտեսվարություն, որի հետևանքով ամեն տարի ոռոգելի հողատարածություններից պակաս է ստացվում մոտավորապես 10 միլիոն ռուբլու համախառն արտադրանք:

Հանրապետությունում կան փաստեր, և բավական շատ, երբ ջրատնտեսական օբյեկտների նախագծումը և կառուցումը կատարվում է այն հողերի գյուղատնտեսական յուրացումից անջատ, որոնք գտնվում են ջրային սիստեմների ընդգրկած գոտում:

Այս մասին մեկ անգամ ևս ասվում է, որովհետև մենք հիմա էլ երաշխիք չունենք, թե այդպիսի օբյեկտների թիվը չի համալրվի նորերով: Տվյալ դեպքում, առաջին հերթին, նկատի ունենք Ազատի ջրամբարի ոլորտում գտնվող ոռոգելի հողերը: Շինարարները նախատեսում են ընթացիկ տարում այդ սիստեմում շահագործման հանձնել ոռոգման ցանցի մի մասը՝ 7.100 հեկտար հողերի ջուր մատակարարելու համար, սակայն առ այսօր հանձնված է այդ ցանցի ոլորտում գտնվող սոսկ 650 հեկտար հող: Մնացած հողերը դեռ չեն նախապատրաստվել ջրի ընդունման համար, որի պատճառով ոռոգիչ ցանցի և հողի պարապուրդը անխուսափելի կլինի: Վերջնականապես լուծված չէ նաև ջրելու եղանակի հարցը: Մոտակա երկու տարում, Ախուրյանի ջրամբարի կառուցումը ավարտելու շնորհիվ, մենք հնարավորություն կստանանք այդ ջրամբարի և Թալինի ոռոգիչ սիստեմի 2-րդ հերթի գոտու մեջ գտնվող հողերից ոռոգելու մոտավորապես 35 հազար հեկտար տարածություն: Սակայն առ այսօր գործնականորեն դեռ ոչինչ չի արվել այդ հողերը յուրացնելու համար: Իսկ չէ՞ որ դժվար չէ հաշվել, որ կուլտուր-տեխնիկական միջոցառումների անցկացման՝ «Հայգյուղտեխնիկա»-ի սիստեմում եղած կարողությունները բացահայտորեն անբավարար են մոտակա երկու-երեք տարում այդ հողերի յուրացման աշխատանքները լրիվ ծավալով կատարելու համար:

Ջրատնտեսական շինարարության մեջ, ջրատնտեսական օբյեկտների, խոշոր ոռոգիչ սիստեմների և նրանց ոլորտում գտնվող ոռոգելի հողերի օգտագործման ասպարեզում ստեղծված դրությունը հրամայաբար պահանջում է, որ համապատասխան մինիստրություններն ու գերատեսչությունները, նախագծային և գիտահետազոտական կազմակերպությունների հետ համատեղ, հողային ֆոնդի հետազոտման արդյունքների հիման վրա, որն անհրաժեշտ է կատարել մելիորատիվ ռեսուրսներ և գյուղատնտեսական օգտագործման համար պիտանի հողատարածություններ գտնելու նպատակով, մշակեն և հանրապետության կառավարության հաստատմանը ներկայացնեն հողերի օգտագործման և յուրացման գլխավոր սխեման: Նրանում պետք է նախատեսվեն ներտնտեսական հողաշինարարության ճշգրտումը, կոլտնտեսությունների,



սովխոզների, արտադրական միավորումների, պետական և գյուղատնտեսական ձեռնարկությունների տերիտորիայի կազմակերպման կոմպլեքսային պլանների մշակումը՝ հաշվի առնելով արտադրության մասնագիտացումը և զարգացման հեռանկարները:

***

Չի կարելի պատկերացնել մասնագիտացված և համակենտրոնացված գյուղատնտեսական արտադրություն, առանց գիտության ու տեխնիկայի նվաճումների արդի պահանջներին համապատասխանող ամուր նյութատեխնիկական բազայի: Ուստի, կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ընդլայնմանն ու ամրապնդմանը:

Վերջին տասնամյակում հանրապետությունում քիչ բան չի արվել կոլտնտեսություններն ու սովխոզները տեխնիկապես զինելու գործում: Մշակվող 100 հեկտար վարելահողին հանրապետությունում միջին հաշվով ընկնում է 320 ձիաուժ էներգակարողություն, իսկ երկրում, միջին հաշվով, 196 ձիաուժ:

Սակայն եղած տեխնիկան բնավ արդյունավետ չի օգտագործվում: Բավական է նշել, որ մեկ էտալոնային տրակտորի հերթափոխային արտադրողականությունը հանրապետությունում միջին հաշվով կազմում է 2,7 հեկտար, մինչդեռ միութենական միջին ցուցանիշը 6,8 հեկտար է:

Գաղտնիք չէ, որ շատ տնտեսություններ, ունենալով տարբեր կուլտուրաներով զբաղեցված ոչ մեծ տարածություններ, ստիպված են ձեռք բերել բազմազան գյուղատնտեսական տեխնիկա՝ ելնելով այդ կուլտուրաների մշակության տեխնոլոգիայից: Դրա հետևանքով սեզոնային բեռնվածությունը մի քանի անգամ պակաս է լինում նրանց տեխնիկական հնարավորություններից:

Այսպես, Արարատյան դաշտավայրի շրջանների տնտեսությունների մեծ մասում հացահատիկի կոմբայնների սեզոնային բեռնվածությունը կազմում է ընդամենը 15—50 հեկտար, այսինքն՝ այդ մեքենաների տեխնիկական հնարավորություններից 5—10 անգամ պակաս, իսկ կարտոֆիլացան և կարտոֆիլահան մեքենաների բեռնվածության գործակիցը հանրապետությունում կազմում է 0,67 ու 0,42, և այս պայմաններում հանրապետության տնտեսությունները շարունակում են գնել նոր մեքենաներ: Այս դրությունը հրամայաբար պահանջում է վերանայել տեխնիկայի օգտագործման կազմակերպումը, իրականացնել նրա համակենտրոնացումը՝ նպատակ ունենալով պլանաչափորեն և առավել ռացիոնալ կերպով ձևավորել մեքենատրակտորային համակազմը, բարելավել նրա օգտագործումը՝ ի հաշիվ լայն շարժունակության: Անցյալ տարի հանրապետության առանձին շրջաններում «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը արտադրական սպասարկման վերցրեց կոլտնտեսություններն ու սովխոզները: Այդպիսի համագործակցության առաջին արդյունքները հուսադրող են:

Վերջերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության Մինիստրների սովետը որոշում ընդունեցին «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորման մասնագիտացված ջոկատների և տրակտորային բրիգադների կողմից կոլտնտեսությունների և սովխոզների արտադրական սպասարկման հետագա ընդլայնման մասին: Գյուղատնտեսության մինիստրությունը և «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, նրանց տեղական մարմինները պետք է կոլտնտեսություններին ու սովխոզներին լայնորեն ներգրավեն մասնագիտացված ջոկատների ու տրակտորային բրիգադների կողմից արտադրական սպասարկման սիստեմի մեջ:

Գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը, մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները կուտակված փորձի հիման վրա պետք է մշակեն կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական սպասարկման նոր, առավել կատարյալ ձևեր:

Դրա հետ մեկտեղ պետք է խորհենք նաև եղած գյուղատնտեսական տեխ-

գործունեությունը ագրոքիմիական ծառայության, բույսերը հիվանդություններից և վնասատուներից պաշտպանելու, դաշտերի և այգիների մոլախոտերի դեմ պայքարելու, հողերը էռոզիայից պահպանելու ծառայության, հողերի անվթարությունն ապահովելու և բերրիությունը բարձրացնելու կոմպլեքսային միջոցառումների կիրառման ասպարեզում, և դա այն դեպքում, երբ հանրապետության մեկ տնտեսությանը միջին հաշվով ընկնում է ավելի քան երկու գիտական աշխատող, ընդ որում նրանցից մեկը՝ գիտության թեկնածուի կամ դոկտորի գիտական աստիճանով։ Առանձին գիտական հիմնարկների թեմատիկան վերլուծելիս այնպիսի տպավորություն է ստեղծվում, որ որոշ գիտական աշխատողների չեն անհանգստացնում հանրապետության գյուղատնտեսական արտադրության զարգացման կոնկրետ պրոբլեմները։

Մեզանում չկա արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորման արդյունավետ սիստեմ։ Ավելին, գիտության և առաջավոր փորձի նվաճումները կիրառություն չեն գտնում նույնիսկ փորձնական-արտադրական էքսպերիմենտալ և ուսումնական տնտեսություններում։ Հայաստանի գյուղատնտեսական ինստիտուտի (ռեկտոր՝ ընկ. Ա. Թովմասյան) «Ոսկեհատ» ուսումնական տնտեսությունն անցած վեց տարում յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով ստացել է 16,8 ցենտներ խաղող, որը 2—3 անգամ պակաս է հարևան, ոչ-առաջավոր տնտեսություններից և 3,5 անգամ պակաս՝ հանրապետության միջին ցուցանիշից։ Բայց չէ՞ որ այդ բազայում պետք է սովորեն մեր ապագա մասնագետները։

Արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման գործում կոչված է մեծ դեր խաղալու ագրարային-տնտեսական գիտությունը։ Հանրապետության տնտեսագետ-ագրարայինների առջև կարևոր խնդիրներ են դրված գյուղատնտեսական արտադրությունը ինդուստրիալ-արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու կոնկրետ ուղիների մշակման ասպարեզում։ Հանրապետության պլանային և գյուղատնտեսական մարմինները պետք է ունենան գյուղատնտեսության ինտենսիվացման, միջտնտեսային կապերի զարգացման, կոոպերացման, միավորումների զարգացման և այլ գործոնների հիման վրա հանրապետության գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու հստակ, տնտեսապես հիմնավորված, փուլ առ փուլ իրագործելի պլան։ Ցավոք, պետք է արձանագրել, որ այսօր էլ գոյություն չունի գյուղատնտեսության մասնագիտացման այդպիսի խոր մտածված, գիտականորեն հիմնավորված, տեղական շրջանային կազմակերպությունների և հանրապետության իրավասու մարմինների հետ համաձայնեցված պլան։

Հայտնի է, սակայն, որ ամեն մի գործում գործողությունների ծրագրի բացակայությունը հանգեցնում է սուբյեկտիվիզմի և վոլյունտարիզմի։ Հենց գյուղատնտեսության մեջ գլխավոր գծի և գործողությունների ստրատեգիական պլանի բացակայության պատճառով նրա հետագա զարգացման բախտը տեղերում լուծվում է կոլտնտեսությունների նախագահների և պետական տրնտեսությունների դիրեկտորների մակարդակով, իսկ լավագույն դեպքում՝ կուսակցության շրջկոմի քարտուղարի և շրջգործկոմի նախագահի մակարդակով։ Դեռ լավ է, եթե այդ մարդիկ գիտակ են լինում։

Պետպլանը, գիտությունների ակադեմիան, գյուղատնտեսության մինիստրությունը, «Հայգյուղտեխնիկա» հանրապետական միավորումը պետք է վճռական միջոցներ ձեռնարկեն՝ բարձրացնելու ճյուղային գյուղատնտեսական գիտահետազոտական հիմնարկների և բուհերի պատասխանատվությունը կոլտնտեսային և սովխոզային արտադրության գիտատեխնիկական առաջադիմությունն արագացնելու գործում, մշակեն գիտության և առաջավոր փորձի նվաճումները պլանաչափորեն գյուղատնտեսական արտադրության մեջ ներդնելու հստակ սիստեմ, հատուկ ուշադրություն դարձնեն հետազոտությունների կազմակերպման, դրանց ռացիոնալ կոորդինացման հարցերի վրա, գիտության ուժերն ու միջոցները կենտրոնացնեն գյուղատնտեսական արտադրության զարգացման, նրա ինտենսիվացման նպատակային ծրագրերի մշակման վրա,



որոնք ընդգրկեն տեխնիկական, տեխնոլոգիական, տնտեսական, կազմակերպական և սոցիալական հարցերի ամբողջ խումբը։ Միայն տարբեր մասնագիտությունների գիտնականների ջանքերի միավորումը կարող է հաջողություն ապահովել բազմապլան և բարդ պրոբլեմների մշակման գործում։ Հանրապետության գիտահետազոտական ինստիտուտները պարտավոր են ամենակարճ ժամկետներում տալ հիմնավորված հանձնարարականներ մասնագիտացված ձեռնարկությունների նպատակահարմար չափերի վերաբերյալ, մշակեն միջտնտեսային ձեռնարկությունների ներսում տնտեսական հարաբերությունների գիտականորեն հիմնավորված սիստեմ, աշխատանքի և արտադրության նյութական և բարոյական խրախուսման կարգը, միջտնտեսային և ներտնտեսային մասնագիտացումը զուգորդելու առաջարկություններ։

Հանրապետության գիտնականները կոչված են փոխադարձ սերտ կապի հիման վրա մշակել նաև հողագործության կուլտուրայի բարձրացման, անասնապահության զարգացման, կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման պրոբլեմները, բույսերն ու կենդանիներին հիվանդություններից պաշտպանելու միջոցառումները և այլն։

Բուսաբուծության բնագավառում անհրաժեշտ են գյուղատնտեսական կուլտուրաների մշակության արդյունավետ տեխնոլոգիաներ, որոնք ապահովեն դրանց արտադրության ըստ ամենայնի ավելացումը, հարկավոր է մասնագիտացված ցանքաշրջանառությունների սիստեմ, որը նախատեսի միջանկյալ և կրկնվող կուլտուրաների լայն կիրառումը, անհրաժեշտ են բարձր բերքատու նոր սորտեր ու հիբրիդներ։ Անասնապահության բնագավառում հանրապետության գիտնականները պետք է մշակեն գործնական առաջարկություններ անասնապահական մթերքների արտադրության ինդուստրիալ տեխնոլոգիայի արմատավորման, ցեղաբուծական և սելեկցիոն աշխատանքի բարելավման, կերի բազայի ամրապնդման վերաբերյալ։ Հասնել այն բանին, որ կերի արտադրության և կերի պատրաստման սիստեմները լիովին համապատասխանեն ինտենսիվ անասնապահության պահանջներին, նրա վարման ինդուստրիալ մեթոդներին։

Հետազոտություններում կոմպլեքսայնություն ապահովելու, գյուղատնտեսական գիտության նվաճումները պրակտիկայում արագ արմատավորելու նպատակով մենք պետք է գտնենք գիտության և արտադրության ինտեգրացման առավել նպատակահարմար ձևեր։

ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ «գյուղատնտեսության հետագա վերելքը կուսակցությունը դիտում է որպես կարևորագույն, համապետական խնդիր»։ Այդ կապակցությամբ ուզում եմ նշել, թե կոլտնտեսություններին և սովխոզներին ինչպիսի էական օգնություն կարող են ցույց տալ արդյունաբերական և տրանսպորտային ձեռնարկությունները, եթե լավ կազմակերպվի շեֆական աշխատանքը։

Վերջին երկու տարում Հրազդանի շրջանի տնտեսություններում արդյունաբերական ձեռնարկությունների օգնությամբ կառուցվել և շահագործման են հանձնվել 10 տիպային անասնապահական շենքեր, կերի 5 արտադրամաս, սիլոսային կառուցվածքներ և ուրիշ շատ օբյեկտներ։

Արդյունաբերության, տրանսպորտի ձեռնարկությունների, շինարարական կազմակերպությունների կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, աշխատանքային կոլեկտիվների կարևորագույն խնդիրն է՝ ապահովել գյուղի պատվերների ժամանակին կատարումը, ավելի լրիվ օգտագործել եղած ռեզերվները գյուղատնտեսական տեխնիկայի, սարքավորումների, հանքային պարարտանյութերի, պահեստամասերի և այլ նյութատեխնիկական ռեսուրսների լրացուցիչ արտադրության համար և, որ գլխավորն է, ըստ ամենայնի զարգացնել շեֆական օգնությունը կոլտնտեսությունների, սովխոզների և միջտնտեսային ձեռնարկությունների արտադրական բազան ամրապնդելու նպատակով։

Անհրաժեշտ է, որ գործարանների ու ֆաբրիկաների, տրանսպորտային և շինարարական ձեռնարկությունների ու կազմակերպությունների բոլոր կոլեկ-

տիվները նախատեսեն գյուղին շեֆական օգնություն ցույց տալու աշխատանքների կոնկրետ ծավալներն ու ժամկետները։ Շեֆական աշխատանքն է՛լ ավելի ուժեղացնելու նպատակով մոտ օրերս Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն կընդունի հատուկ որոշում։

Գիտության և առաջավոր պրակտիկայի արդի նվաճումների, գյուղատնտեսական արտադրության կազմակերպման նոր ձևերի ներդրմամբ արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու պայմաններում զգալիորեն աճում են մասնագետներին և բոլոր կադրերին, նրանց որակավորմանը, ինդուստրիալ տիպի մասնագիտացված ձեռնարկություններում արտադրությունը կազմակերպելու նրանց կարողությանը ներկայացվող պահանջները։

Դաստիարակելով կադրերին, հոգ տանելով նրանց որակավորումը բարձրացնելու և գաղափարական կոփվածքը ուժեղացնելու մասին, կուսակցական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն յուրաքանչյուր մասնագետի, յուրաքանչյուր աշխատողի ստեղծագործական նախաձեռնության, հանձնարարված գործի համար պատասխանատվության զգացումը զարգացնելու վրա։ Վերջին տարիներս ստեղծվել է գյուղատնտեսական արտադրության մասնագետների նոր տիպ։ Մենք «նոր» ենք ասում ոչ թե այն իմաստով, որ նրա բնորոշ գծերը հանկարծակի են ի հայտ եկել և չունեն իրենց նախապատմությունը, այլ այն պատճառով, որ դրանք իրենց լիակատար դրսևորումն ստացել են գյուղատնտեսությունը արդյունաբերական հիմքի վրա փոխադրելու պայմաններում։ Տնտեսության մեքենայացման ու ավտոմատացման շնորհիվ ծանրության կենտրոնը ֆիզիկական աշխատանքից փոխադրվում է մտավորի վրա, և մեծանում է որակյալ աշխատանքի տեսակարար կշիռը։

Կուսակցական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն մասնագիտացված տնտեսությունների և ձեռնարկությունների ղեկավար կադրերի ընտրության, առաջ քաշման ու դաստիարակության վրա, այնպես անեն, որ անասնապահական խոշոր համալիրները, միջտնտեսային ձեռնարկություններն ու միավորումները, կոլտնտեսությունների և սովխոզների բոլոր արտադրական ստորաբաժանումները գլխավորեն արտադրության և կառավարման կազմակերպման նորագույն մեթոդներին տիրապետող բարձրորակ մասնագետները։

***

Մեր կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում արդի փուլում գյուղի սոցիալական զարգացմանը, որպես կուսակցության ընդհանուր ագրարային քաղաքականության բաղկացուցիչ մասի։ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում ու փաստաթղթերում լայն արտացոլում է գտել գյուղում հասարակական հարաբերությունների կատարելագործման, նոր տիպի աշխատողի ձևավորման, գյուղի աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման հետ կապված պրոբլեմների ամբողջ կոմպլեքսը։

Վերջին տարիներս գյուղի սոցիալական զարգացման գործում խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել։ Այդ տեսակետից շատ բան է արվել իններորդ հնգամյակի տարիներին։ Այս ամենը, անկասկած, կնպաստի գյուղում կյանքի բարելավմանը։ Սակայն, ամբողջ դրականի հետ մեկտեղ, հանրապետության բնակավայրերի սոցիալական զարգացման պրոբլեմները դեռևս իրենց լուծմանն են սպասում։ Ցավոք, շատ շրջաններում չեն կատարվում բնակելի տների կառուցման, գյուղական կուլտուր-կենցաղային օբյեկտները շահագործման հանձնելու պլանները, անհատական շինարարությունը կատարվում է առանց հատակագծման, պատշաճ ուշադրություն չի նվիրվում գյուղերի բարեկարգմանը և սանիտարական վիճակի բարելավմանը, որը, անշուշտ, նպաստում է միգրացիոն պրոցեսների ուժեղացմանը։ Ուստի գյուղի սոցիալական զարգացման բոլոր հարցերը պահանջում են կուսակցական-սովետական, տնտեսական մարմինների առավել մեծ ուշադրությունը։ Մենք պետք է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկենք՝ արագացնելու գյուղական բնակավայրերի զարգացման գլխավոր հատակագծերը կազմելու աշխատանքները, որպեսզի այսուհետև ար-



տադրական և կուլտուր-կենցաղային օբյեկտների, բնակարանների շինարարու-
թյունը, ինչպես նաև բարեկարգման աշխատանքները կատարվեն կառուցա-
պատման խստիվ մշակված և հաստատված հեռանկարային պլանների հիման
վրա։
Արդի փուլում ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության կենսագործումը,
արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման նախատեսվող
ծրագրի հաջող իրականացումը պահանջում են մշտապես կատարելագործել
գյուղի կուսակցական կազմակերպությունների կազմակերպչական և քաղաքա-
կան աշխատանքը, հետևողականորեն հաստատել իսկական կուսակցական ոճը
կուսակցության գյուղական շրջկոմների գործունեության բոլոր ոլորտներում։
Ընդ որում, անհրաժեշտ է հաշվի առնել, որ դա տևական ժամանակաշրջանի
համար նկատի առնված պրոցես է, որը պետք է իրագործել պլանաչափ կեր-
պով, կշռադատված, տնտեսական անհրաժեշտ հիմնավորմամբ։ Կուսակցու-
թյան շրջկոմները պետք է դառնան գյուղատնտեսությունը որակական նոր աս-
տիճանի բարձրացնելու համար մղվող պայքարի իսկական շտաբներ, հմտորեն
վարեն և կոորդինացնեն գյուղի բոլոր պետական ու հասարակական կազմա-
կերպությունների գործունեությունը՝ այն ենթարկելով միասնական նպատակի։
Ընթացիկ տնտեսական խնդիրների լուծման հետ մեկտեղ կուսակցական կո-
միտեները պետք է մեծ ուշադրություն նվիրեն այն պրոբլեմներին, որոնց լու-
ծումից, վերջին հաշվով, կախված են կոլտնտեսային և սովխոզային արտա-
դրության հետագա զարգացումն ու հաստատուն աճը։ Կարևոր է, որ արտա-
դրական հարցերի լուծումը շաղկապվի գյուղում հասարակական հարաբերու-
թյունների զարգացման հետ, կուսակցության ծրագրային խնդրի՝ քաղաքի և
գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային էական տար-
բերությունների աստիճանական վերացման խնդրի իրականացման հետ։
Այս տեսակետից վերջին տարիներս հանրապետության շրջանային կու-
սակցական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել։ Ուզում
եմ նշել Հրազդանի, Կալինինոյի, Նաիրիի, Սիսիանի, Կրասնոսելսկի, Սպիտա-
կի, Ախուրյանի և կուսակցության մյուս շրջկոմների դրական աշխատանքը։
Ուշադրության արժանի է Կալինինոյի շրջանի կուսակցական կազմակեր-
պության և գյուղատնտեսության մինիստրության նախաձեռնությունը սով-
խոզների մասնագիտացված արտադրական միավորումներ ստեղծելու գործում,
որը հնարավորություն կընձեռի միավորման ներսում կատարելու ճյուղերի
խոր մասնագիտացում ու համակենտրոնացում, ստեղծելու ֆինանսական և
նյութական միջոցներով ռացիոնալ կերպով մանևրելու հնարավորություն, բա-
րելավելու տնտեսությունների կառավարումը, պլանավորումն ու մատակարա-
րումը, արագացնել շրջանառու միջոցների շրջանառությունը։
Ցավոք, բնավ ամենուրեք չէ, որ գործը այդպիսի հիմքերի վրա է դրված։
Շատ քիչ բան է արված, իսկ առանձին շրջաններում փաստորեն ոչինչ չի
արված ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման, գյուղատնտեսությունն ին-
տենսիվ ռելսերի վրա փոխադրելու ուղղությամբ։ Այս տեսակետից լուրջ մտա-
հոգության առիթ ունեն Ազիզբեկովի, Գուգարքի, Եղեգնաձորի, Գորիսի, Մար-
տունու, Իջևանի, Ստեփանավանի և այլ շրջանների կուսակցական կազմակեր-
պությունները։
Կուսակցության գյուղական շրջկոմները միշտ եղել են գյուղում կուսակ-
ցության քաղաքականության մարտական ու հեղինակավոր կիրառողները։
ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ առաջ քաշված նոր խնդիրները հրամայաբար
պահանջում են է՛լ ավելի բարձրացնել գյուղատնտեսական արտադրության
զարգացման կուսակցական ղեկավարման մակարդակը, հատկապես նրա վրճ-
ռական օղակներից մեկում՝ շրջանային օղակում։ Դրա հիմնական պատաս-
խանատվությունն ընկնում է կուսակցության շրջկոմների վրա։
Հայաստանի կոմկուսի Կենտկոմը վստահ է, որ կուսակցության շրջկոմ-
ները, որոնք իրականում պետք է լուծեն կուսակցության ագրարային քաղա-
քականության հետագա իրականացման մեծ խնդիրները, կմիավորեն և կգլխա-
վորեն գյուղում սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակեր-

*պությունների, գյուղատնտեսության բոլոր աշխատավորների գործունեությունը և իրականում կապահովեն միջտնտեսային կոոպերացման ու ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացնելու և համակենտրոնացնելու՝ կուսակցության Կենտրոնական կոմիտեի նախատեսած միջոցառումների կատարումը։*

*Իր զեկուցման վերջում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշում է, որ հանրապետության աշխատավորները սոցիալիստական լայն մրցություն են ծավալել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը արժանավայել դիմավորելու համար։*

*Հոբելյանական տարվա առաջին եռամսյակի աշխատանքի արդյունքները ցույց են տալիս, որ հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում գործը լավ է սկսված։ Հանրապետության արդյունաբերությունը հաջողությամբ է լուծել իր առջև դրված խնդիրները։ Կատարվել ու գերակատարվել են արդյունաբերական արտադրանքի արտադրության իրացման և նրա ծավալի աճի պլանները, ապահովվել են տեմպային բարձր ցուցանիշներ։ Իրենց խնդիրները հաջողությամբ են կատարել նաև տրանսպորտի, կապի, առևտրի, կենցաղային սպասարկման աշխատողները։ Դրական տեղաշարժեր կան կապիտալ շինարարության ասպարեզում։ Նոր հաջողություններ են ձեռք բերել նաև հանրապետության գիտության ու կուլտուրայի աշխատողները։*

*Իրագործելով այն խնդիրները, որ կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսության մասնագետների, գիտնականների առջև դրվել են ՍՄԿԿ Կենտկոմի նամակում, գյուղի աշխատավորները հաստատակամորեն պայքարում են սահմանված պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման համար։ Այդ մասին վկայում են առաջին եռամսյակի արդյունքները. անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելացել են անասնապահական մթերքների արտադրությունը, ինչպես նաև անասունների և թռչունների գլխաքանակն ու մթերատվությունը։ Հաջողությամբ են կատարվել պետությանը միս, կաթ և ձու վաճառելու պլանները։ Անցյալ տարվա համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ պետությանը վաճառվել է 4,5 տոկոսով ավելի միս, 4,7 տոկոսով ավելի կաթ և 10,2 տոկոսով ավելի ձու։*

*Հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում մեծ աշխատանք է ծավալվել գարնան դաշտային աշխատանքները կազմակերպված անցկացնելու և անասունների ձմեռումը հաջողությամբ ավարտելու համար։ Բայց կան նաև ոչ քիչ թերություններ։ Մի շարք տեղերում ձգձգվում է սերմացուի նախապատրաստությունը, անհանդուրժելի դանդաղ տեմպերով են կատարվում տեխնիկայի նորոգումը, օրգանական և հանքային պարարտանյութերի փոխադրումը։ Որոշ շրջաններում կրճատվել է անասունների, մասնավորապես ոչխարների գլխաքանակը, նվազել են անասնապահության մթերատվության բարձրացման տեմպերը, կրճատվել են մսի և կաթի արտադրության և պետությանը դրանց վաճառքի ծավալները։*

*Հայտնի է, որ ընթացիկ տարվա գարունը խիստ դժվարին և գյուղատնտեսության համար անբարենպաստ է։ Տարեսկզբից օդերևութաբանական անբարենպաստ պայմանները, որոնք է՛լ ավելի վատացան ապրիլ ամսին, զգալիորեն դժվարացրին գարնան դաշտային աշխատանքների անցկացումը։ Մեծ վնաս է հասել բազմամյա տնկարկներին և բանջարանոցային կուլտուրաներին։ Այս ամենը ամբողջ հասակով մեկ դնում է կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքն ուժեղացնելու խնդիրը։ Խոսքը վերաբերում է այն բանին, որ ձեռքից բաց չթողնվի ժամանակը, աշխատանքը կատարվի լարված, համաչափ, ուժերի լիակատար նվիրումով։ Այժմ գլխավորը, որի վրա հատուկ ուշադրություն հրավիրեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, այն է, որ պետք է ակտիվացնել գյուղական կուսակցական բոլոր կազմակերպությունների, սովետական, արհմիութենական և կոմերիտական մարմինների աշխատանքը, դաշտերի և ֆերմաների աշխատավորներին հարվածային աշխատանքի մոբիլիզացնել, գործի դնել բոլոր ռեզերվները, ակտիվ աշխատանքի ներգրավել գյուղատնտեսության*



*մասնագետների մեծաթիվ ջոկատին, յուրաքանչյուր կոլտնտեսականի, սովխոզի յուրաքանչյուր բանվորի։ Գյուղի աշխատավորներին, սովետական բոլոր մարդկանց այդ բանին են կոչում մեր կուսակցությունը, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեն։*

*Ընկերնե՛ր։*

*ՍՄԿԿ-ի ժամանակակից ագրարային քաղաքականությունն իր մեջ մարմնավորում է սոցիալիստական էկոնոմիկայի ըստ ամենայնի ամրապնդման, աշխատավորների կենսամակարդակի անշեղ բարձրացման կուսակցության գիծը։ Այն համապատասխանում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների արմատական շահերին, ծառայում որպես մասսաների ստեղծագործական նախաձեռնության զարգացման հզոր խթան, գյուղի աշխատավորներին, բոլոր սովետական մարդկանց ոգեշնչում է դեպի կոմունիզմի կառուցման նոր մեծագործություններ։*

*Թույլ տվեք հավաստիացնել ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, որ հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորներն իրենց ջանքերն ու եռանդը կգործադրեն ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների հաջող կատարման համար, հանրապետության գյուղատնտեսությունը և ամբողջ էկոնոմիկան կբարձրացնեն զարգացման նոր մակարդակի, աշխատանքային նոր հաջողություններով կնշանավորեն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը։* (Երկարատև ծափահարություններ)։

1917 — 1977

# ԶԱՐԳԱՑՆԵՆՔ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ

**Պ. Գ. ՍԱՖՅԱՆ**
ՀԿԿ Երևանի Սովետական շրջկոմի
առաջին քարտուղար

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ բնորոշ ու յուրահատուկ է միայն սոցիալիստական հասարակարգին, որտեղ հաղթանակել է արտադրության միջոցների նկատմամբ հանրային, համաժողովրդական սեփականությունը և ամբողջ հարստությունը պատկանում է ժողովրդին, ծառայում նրա շահերին։ Այն արդյունք է սոցիալիզմի հաղթանակի, կոմունիստական կուսակցության բեղմնավոր գործունեության, աշխատավորական զանգվածների շրջանում նրա ծավալած գաղափարադաստիարակչական տևական ու ստեղծագործական աշխատանքի։*

*Հանրագումարի բերելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո սովետական ժողովրդի ձեռք բերած պատմական նվաճումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում կարևորեց նաև սովետական ապրելակերպի հաստատման իրողությունը։ «Անցած ուղու մյուս գլխավոր արդյունքը,— ասաց նա,— մեր սովետական ապրելակերպն է։ Իսկական կոլեկտիվիզմի ու ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն՝ այսպիսիք են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսիք են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղնուծուծը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 131)։*

*Սովետական ապրելակերպը մեր կյանքն է, հանրային աշխատանքի, հասարակության նկատմամբ մարդու գիտակցական վերաբերմունքը, քաղաքացիական պարտքի խոր ըմբռնումը, հասարակական-քաղաքական ակտիվությունը, առողջ կենցաղավարությունը, կոմունիստական աշխարհայեցողությունը։*

*Սովետական ապրելակերպի կրողը ՍՍՀՄ քաղաքացին է, որը նոր տիպի մարդ է՝ բազմակողմանի զարգացած, բարձր կուլտուրայով օժտված, իր երկրի ջերմ հայրենասերը։ Նա, ինչպես ասված է «Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, կազմավորվում և կոփվում էր հեղափոխական ստեղծարար աշխատանքի ընթացքում և ազատության համար մղվող պայքարում։*



*Մարդու ապրելակերպի ըմբռնումը լայն և համապարփակ հասկացություն է։ Այն պարփակում է մարդկանց տնտեսական, սոցիալական, քաղաքական հարաբերությունները, բարոյական սկզբունքները, ժողովրդի հոգևոր ու ազգային ավանդույթները։*

*Սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ սովետական իշխանության հեղափոխական վերափոխումները, որոնք իրենց արտահայտությունը գտան տնտեսության, հասարակական հարաբերությունների, գաղափարական ու բարոյական դաստիարակության, մարդկանց կենցաղի ու վարքագծի բնագավառներում, հիմք հանդիսացան՝ ստեղծելու սոցիալիստական սկզբունքներով նոր ապրելակերպ՝ սովետական ապրելակերպը, որն իր բնույթով ոչ միայն տարբերվում է բոլոր շահագործողական հասարակարգերի ապրելակերպերից, այլև դրանց հակապատկերն է։ Սոցիալիստական ապրելակերպի կարևորագույն նախադրյալներն են արտադրամիջոցների հանրային սեփականությունը, սոցիալիստական արտադրահարաբերությունները, կոմունիստական գաղափարախոսությունը։*

*Մեր երկրի զարգացման արդի փուլում՝ հասուն սոցիալիզմի ժամանակաշրջանում, ավելի է հարստանում սովետական ապրելակերպի բովանդակությունը, ավելի հստակորեն են դրսևորվում նրա առավելությունները կապիտալիստական ապրելակերպի նկատմամբ։ Շահագործողական հասարակարգերում, որտեղ կողք-կողքի բախվում են հակամարտ դասակարգերը, չեն եղել և չեն կարող լինել միասնական ապրելակերպեր։ Այլ է սոցիալիստական հասարակարգը, որտեղ վերացված է մարդու շահագործումը մարդու կողմից և արտադրության միջոցները հանդիսանում են համաժողովրդական սեփականություն։ Այստեղ հասարակության բոլոր խավերի ու ժողովուրդների համար ձևավորվել ու զարգանում է մեկ միասնական ապրելակերպ՝ սոցիալիստական սովետական ապրելակերպը, որը հասարակության անդամին ընձեռել է բազմակողմանի գործունեության և ուժերի դրսևորման անսահմանափակ հնարավորություններ։*

*Ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի և ՀԿԿ XXVI համագումարի որոշումներով՝ կուսակցության Սովետականի շրջանային կոմիտեն իր գործունեության հիմնական ուղղություններից մեկը համարում է սովետական ապրելակերպի սկզբունքների և նորմերի հետևողական արմատավորումն ու զարգացումը շրջանի աշխատավորական զանգվածների կենսագործունեության մեջ։ Այդ նպատակով շրջկոմի բյուրոն հաստատել և աստիճանաբար իրականացնում է կոմպլեքսային միջոցառումների պլան։ 1974 թ. ապրիլին շրջկոմի պլենումը քննարկեց աշխատավորներին սովետական ապրելակերպի պահանջների ոգով դաստիարակելու ասպարեզում շրջանի կուսկազմակերպությունների խնդիրները։ Արժեքավորելով այդ առնչությամբ «Արդկապ» գործարանի, «Արագած» ֆաբրիկայի և մյուս ձեռնարկությունների ու կազմակերպությունների ծավալած դրական գործունեությունը, պլենումը միաժամանակ նշեց, որ կաթի կոմբինատի, ոչ-ալկոհոլային խմիչքների, շամպայն գինիների գործարանների, շինարարական տեխնիկումի, №№ 127 և 96 դպրոցների կուսկազմակերպությունները դեռևս անբավարար են զբաղվում աշխատավորների հասարակական և քաղաքական ակտիվության բարձրացմամբ, առանձին տեղերում անհաշտ պայքար չեն մղում սոցիալիստական համակեցության և բարոյականության նորմերը խախտողների դեմ։*

*Պլենումն իր ընդունած որոշմամբ պարտավորեցրեց սկզբնական կուսկազմակերպություններին, տնտեսական ղեկավարներին, գաղափարական բնագավառի աշխատողներին՝ արմատապես բարելավել աշխատավորների շրջանում սովետական ապրելակերպի սկզբունքների պրոպագանդան, նրանց դաստիարակել սոցիալիստական հասարակարգի նվաճումների նկատմամբ հպարտության, աշխատանքի և հանրային սեփականության հանդեպ կոմունիստական վերաբերմունքի, սոցիալիստական համակեցության կանոնները հարգելու ոգով։ Այդ նպատակով պլենումը խնդիր դրեց՝ կատարելագործել մարդկանց դաստիարակության ձևերն ու եղանակները, բարձրացնել քաղաքական-գաղափարական գործունեության արդյունավետությունը։*

Պլենումի որոշումը քննարկվեց շրջանի բոլոր սկզբնական կուսկազմակերպություններում: Շրջկոմի բյուրոն պարբերաբար անդրադառնում է պլենումի որոշման կատարման ընթացքին շրջանի հիմնարկ-ձեռնարկություններում: Անցած տարվա հոկտեմբերին, օրինակ, քննարկեցինք կոլեկտիվի անդամներին սովետական ապրելակերպի ոգով դաստիարակելու ասպարեզում «Արագած» ֆաբրիկայի կուսկազմակերպության կատարած աշխատանքի արդյունքները: Բյուրոն նշեց, որ գործարանում հաստատվել են ընկերական ու բարեկամական լավ փոխհարաբերություններ, ստեղծվել է ամուր կոլեկտիվ, որը պատվով է կատարում պետական պլաններն ու սոցպարտավորությունները:

Սովետական ապրելակերպի մարդու ամենաբնութագրական հատկանիշներն են կոմունիստական աշխարհայացքը, լենինյան գաղափարների կենսագործման համար նրա ակտիվ պայքարը: Մարքսիզմ-լենինիզմը դարձել է սովետական նոր մարդու հասարակական-քաղաքական, աշխատանքային ակտիվության աղբյուրը, բարոյական վարքագծի ուղենիշը, որոշում է նրա տեղը կյանքում: «Մեր կարգերի ուժը,— նշված է ՍՄԿԿ XXV համագումարին Կենտկոմի տված հաշվետվության մեջ,— մասսաների գիտակցականությունն է: Եվ կուսակցությունն իր մշտական հոգսն է համարում կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու հաստատակամության, կամքի ու հըմտության դաստիարակումը» (նույն տեղը, էջ 107):

Սովետական մարդկանց համար գիտելիքների ձեռքբերման ամբողջ համակարգում, գիտական աշխարհայացքի ձևավորման գործում առանձնահատուկ նշանակություն ունի մարքս-լենինյան տեսության ստեղծագործական յուրացումը: Միայն մարքսիզմ-լենինիզմի խոր յուրացմամբ է հնարավոր ունենալ ճշմարիտ գիտական աշխարհայացք, հասկանալ բնության ու հասարակության զարգացման օրինաչափությունները, ձեռք բերած գիտելիքները ներդնել կյանքում:

Սոցիալիստական հասարակության քաղաքացիների կոմունիստական աշխարհայացքի ձևավորման, նրանց գաղափարայնության, գիտակցականության մակարդակի չափանիշը կոնկրետ գործերն են: «Մասսաների քաղաքական դաստիարակության հաջողության չափանիշը, իհարկե, կոնկրետ գործերն են: Կոմունիստական գաղափարայնությունը գիտելիքների, համոզմունքների ու պրակտիկ գործողության համաձուլվածք է»,— նշեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում (նույն տեղը, էջ 114): Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները հետևողականորեն զբաղվում են կոմունիստների ու անկուսակցականների գաղափարական կոփմամբ, նրանց քաղաքական դաստիարակությամբ: Յուրաքանչյուր տարի մեր շրջանի կուսակցական ու կոմերիտական լուսավորության ցանցում մարքսիզմ-լենինիզմը, կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության պրոբլեմներն ուսումնասիրում են ավելի քան 6.000 կոմունիստներ ու անկուսակցականներ, շուրջ 3.000 աշխատավորներ ստանում են տնտեսական գիտելիքներ:

Կուսկազմակերպությունների մեծ մասում ուսուցումը դարձել է մարդկանց գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության կարևորագույն գործոն: Ունկնդիրները ոչ միայն զինվում են քաղաքական ու տեսական խոր գիտելիքներով, այլև, պրակտիկ ճիշտ հետևություններ անելով տեսական հարցերից, հանդես են գալիս աշխատանքային հիանալի նախաձեռնություններով: Նրանք գլխավորում են պայքարը՝ հանուն բարձրորակ արտադրանքի, խնայողության ռեժիմի անխախտ կիրառման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման: Այսպես, ՀԿԿ Կենտկոմի անդամության թեկնածու, «Ալմաստ» գործարանի խառատ Գ. Մարտիրոսյանը հանդես եկավ ընթացիկ տարվա պլանները նոյեմբերի 7-ին կատարելու առաջարկությամբ և օրվա առաջադրանքները կատարում է 120—130 տոկոսով: Համաշինարարական № 3 տրեստի առաջավոր բանվոր Ա. Մեսրոպյանը, հետևելով հանրաճանաչ շինարար Զլոբինի օրինակին, ստեղծել է 28 մարդուց բաղկացած բրիգադ և, աշխատանքի ճիշտ կազմակերպման, առաջավոր փորձի ներդրման շնորհիվ, հասել որոշակի հաջողությունների, բարձրացրել աշխատանքի որակն ու արդյունավետությունը: Բրիգադն ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը կատարեց 128 տոկոսով:



Մարդու արտադրական ակտիվ գործունեությունը, աշխատանքի նկատմամբ գիտակցական, կոմունիստական վերաբերմունքը, սովետական ապրելակերպի բնորոշ հատկանիշներն են: Սոցիալիստական հասարակության քաղաքացին բարոյական բավականություն է ստանում աշխատանքում, որը նրա դաստիարակության հիմքն է: Աշխատանքային դաստիարակությունը վեհացնում է մեր հասարակարգի յուրաքանչյուր անդամին, նրան մղում ստեղծարար սխրանքների, բարձրացնում գործունեության արդյունավետությունը:

Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպությունները կիրառում են դաստիարակության բազմազան միջոցներ: Այստեղ խոշոր դեր են խաղում կոմունիստական աշխատանքի ու վարպետության դպրոցները, վարպետ-դաստիարակների շարժումը, արտադրության վետերանների մեծարումը, բարոյական խրախուսման մյուս ձևերը: Այս ամենն օգնում է շրջանի աշխատավորությանը՝ հետևողականորեն կենսագործելու ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, իրականացնելու տասներորդ հնգամյակի հոյակապ կանխագծումները:

Շրջանում լայն տարածում է գտել «Ոչ մի ետ մնացող ձեռնարկություն» շարժումը: Արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, ներգրավվելով համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, 1976 թ. երրորդ եռամսյակում նվաճեցին ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի, կուսակցության Երևանի քաղկոմի և Երևանի քաղսովետի գործկոմի փոխանցիկ դրոշները, իսկ դեկտեմբերի 20-ին զեկուցեցին ՀԿԿ Կենտկոմին ու հանրապետության կառավարությանը հնգամյակի առաջին տարվա պլանները կատարելու մասին: Նրանք երկրին տվեցին 4,5 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք:

Շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների գերակշռող մասին բնորոշ են աշխատանքային ակտիվությունը, նախաձեռնությունը, նորարարությունը: «Ալմաստ» գործարանում պետական առաջադրանքների կատարման համար պայքարում են արտադրության բոլոր ղեկավարներն ու բանվորները: ՍՄԿԿ անդամ Լևոն Սահակյանը գործարանի հիմնադիրներից է, նա իր գործունեության ավելի քան երկու տասնամյակի ընթացքում երբեք չի թերակատարել օրվա առաջադրանքը: Նրա համար աշխատանքը երջանկության աղբյուր է: Այսօր Լ. Սահակյանի հետ ձեռնարկությունում հանրային բարիքներ են ստեղծում նրա կինն ու երկու տղաները: Նույն կոլեկտիվի անհամեմատ երիտասարդ անդամներից է Զեմֆիրա Խաչատրյանը: Նա անփորձ աղջնակ էր, երբ անդամագրվեց գործարանի կոլեկտիվին, նրա միջավայրում ու ազդեցությամբ աճեց, հասունացավ, դարձավ առաջավորներից մեկը: Կոլեկտիվը բարձր գնահատեց Զեմֆիրայի աշխատանքը. նա ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ է:

Սահակյանների, Խաչատրյանների նմանները շրջանի ձեռնարկություններում հարյուրներ ու հազարներ են: Սովետական ապրելակերպը, կոմունիստական շինարարության պրակտիկան շարունակ ծնում են այդպիսի հերոսներ: Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները քաջ գիտակցում են, որ միայն հասարակության համար անձնվեր աշխատանքով է հնարավոր գոյավորել սովետական մարդկանց բարոյական բարձր հատկությունները:

Սովետական ապրելակերպի բնորոշ արտահայտություն է սոցիալիստական սիստեմի բնույթից բխող կոլեկտիվիզմը, մարդկանց ընկերական փոխհարաբերությունը: Աշխատանքային պրոցեսում, կոլեկտիվում է դաստիարակվում սովետական մարդը, կոմունիստական հասարակության, ակտիվ ու գիտակից կառուցողը: Կոլեկտիվիզմի ոգով մարդկանց դաստիարակության գործում անգնահատելի դեր է կատարում սոցիալիստական մրցությունը: Շրջանի ավելի քան տասը հազար բանվորներ ու ինժեներատեխնիկական աշխատողներ ընդգրկված են համաժողովրդական այդ շարժման մեջ: Արտադրական կոլեկտիվների մրցությունը ղեկավարելու և նրանց մեթոդական օգնություն ցույց տալու համար կուսշրջկոմին և սկզբնական կուսկազմակերպություններին կից

ստեղծել ենք սոցիալիստական մրցությունը ղեկավարող հանձնաժողովներ,
դիրեկտորական խորհուրդներ, քաղաքական աշխատանքի փորձի ուսումնա-
սիրման ու տարածման հանձնաժողովներ և այլն: Նրանք զբաղվում են մրցու-
թյան կազմակերպման, ծավալման և արդյունքների ամփոփման հարցերով:
Սովետական մարդկանց կոլեկտիվիզմի վառ դրսևորումներից են «Մեկը՝
բոլորի, բոլորը՝ մեկի համար», «Ոչ մի ետ մնացող մեր կողքին» նշանաբան-
ներով վերջին տարիներին արտադրական ձեռնարկություններում լայնորեն
տարածված շարժումները: Իսկական կոլեկտիվիզմի, ընկերական փոխօգնու-
թյան հարաբերություններ են հաստատված նաև մի շարք այլ գործարանների
ամենաերիտասարդ արտադրական կոլեկտիվների միջև: Այստեղ ճիշտ
է լուծված կոլեկտիվի և անհատի փոխհարաբերության հարցը: Ողջ կոլեկտիվը
հետևողականորեն հոգում է իր յուրաքանչյուր անդամի դաստիարակության
մասին, և յուրաքանչյուր ոք իրեն պատասխանատու է զգում կոլեկտիվի առջև,
իր կարողություններն ու ուժերը նվիրաբերում ձեռնարկության առջև դրված
խնդիրների լուծմանը:
Շրջանի «Արագած» արտադրամիավորման կոլեկտիվի աշխատանքային
հաջողությունները կոլեկտիվի միասնական ուժերի, նրա կոլեկտիվ կամքի
արդյունք են: Այստեղ գործվածքային արտադրամասը տևական ժամանակ
ցածրորակ արտադրանք էր թողարկում: Կուսկազմակերպությունը վճռեց միա-
վորման ինժեներա-տեխնիկական անձնակազմի և հմուտ բանվորների ուժերը
կենտրոնացնել այդ հարցի լուծման վրա: Կոլեկտիվ ջանքերը տվեցին իրենց
արդյունքը: Արտադրամասն այժմ գերակատարում է բարձրորակ արտադրան-
քի թողարկման պլանը:
Սովետական մարդը երկրի լիիրավ տերն է: Մասնակցելով արտադրու-
թյան ու պետության կառավարմանը, նա հոգատարություն է ցուցաբերում հա-
սարակական, համաժողովրդական ունեցվածքը պահպանելու և բազմապատ-
կելու նկատմամբ, անհաշտ պայքար է մղում այն ամենի դեմ, ինչը վնասում է
հասարակության շահերին: Այժմ շրջանի աշխատավորներից 14-ը ՀՍՍՀ Գե-
րագույն սովետի և 340-ը՝ Երևանի քաղաքային սովետի և Սովետականի շրջա-
նային սովետի դեպուտատներ են, 320 մարդ հասարակական հիմունքներով
պրոպագանդիստական աշխատանք է կատարում կուսակցական ու կոմերիտա-
կան քաղաքական ուսուցման ցանցում, 500-ը ագիտատորներ ու քաղինֆոր-
մատորներ են, 4.000 մարդ ընդգրկված է հասարակական տարբեր հանձնաժո-
ղովներում: Կուսշրջկոմն ու սկզբնական կուսկազմակերպություններն ամեն
ինչ անում են՝ հասարակական-քաղաքական կյանքին, երկրի ու արտադրու-
թյան կառավարմանը աշխատավորների մասնակցությունն ապահովելու, դրա
ձևերը կատարելագործելու համար:
Սովետական մարդը ակտիվ հասարակական գործիչ է, մասնակցում է
երկրի, քաղաքի, շրջանի, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծմանը:
Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական կազմա-
կերպություններում և հիմնարկություններում ստեղծվել ու գործում են 42
հանձնաժողովներ: Նրանցում ընդգրկված են 320 բանվոր-ծառայողներ, որոնք
բանվորական վերահսկողություն են իրականացնում առևտրի ու հասարակա-
կան սննդի օբյեկտների գործունեության նկատմամբ: Բանվորական ակտիվ
վերահսկողության իրականացման շնորհիվ շրջանի առևտրական օբյեկտնե-
րում նվազագույնի են հասել սովետական առևտրի կանոնների խախտումները:
Սովետական իսկական քաղաքացին կտրականապես ժխտում է օրինա-
զանցությունը, չի հանդուրժում սոցիալիստական օրինականության որևէ
խախտում, նա հանդես է գալիս նման երևույթների դեմ որպես պայքարող
մարտիկ: Այսօր գլխավորը, ինչը որոշում է սովետական մարդու բարոյական
կերպարը, նրա նվիրվածությունն է կոմունիզմի գործին, սերը սոցիալիստա-
կան հայրենիքի նկատմամբ, քաղաքացիական պարտքի խոր գիտակցումը:
Մշակելով աշխատավորական մասսաների համակողմանի զարգացման
եղանակները՝ կուսակցությունը ելնում է հոգևոր հարստությունն ու բարոյա-
կան օրինակելի վարքագիծը ներդաշնակորեն զուգորդող նոր մարդու դաստիա-



րակության անհրաժեշտությունից: Խնդիրն այն է, որ հասարակական տարբեր
ձևերի ու միջոցների ներգործությամբ, հետևողականորեն արմատավորվեն սո-
վետական ապրելակերպի նորմերը մարդկանց կյանքի բոլոր ոլորտներում:
Կուսշրջկոմը քանիցս քննարկել է կոմունիստական բարոյականության նորմերի
արմատավորման հարցերը, անհաշտ պայքար մղել բոլոր նրանց դեմ, ովքեր
յուրացնում են հանրային սեփականությունը, խախտում պետական-ֆինան-
սական կարգապահությունը:
Սոցիալիստական ապրելակերպն արմատավորվում է նաև սովետական
ընտանիքում: Սովետական ընտանիքում ստեղծված նոր, սոցիալիստական հա-
րաբերությունները, հակառակ բուրժուական ընտանիքի, կառուցվում են նրա
անդամների հավասարության, փոխադարձ սիրո ու հարգանքի, աշխատանքա-
յին համագործակցության և փոխօգնության, երեխաների դաստիարակության
համար ծնողների հավասար պատասխանատվության հիման վրա: Այն նոր
մարդու գոյավորման կարևորագույն հաստատությունն է, որտեղ ակնբախորեն
դրսևորվում են մեր հասարակության սոցիալ-բարոյական բնորոշ հատկանիշ-
ները:
Սովետական ընտանիքի ամրապնդման կարևոր նախապայման են նրա
նյութական ապահովվածությունը և բնակարանային պայմանների անշեղ բա-
րելավումը: Իններորդ հնգամյակի տարիներին Սովետականի շրջանում նոր
բնակարաններ են ստացել 18 հազար, իսկ ընթացիկ հնգամյակի առաջին տա-
րում՝ 3.600 քաղաքացիներ: Կուսակցության շրջանային կոմիտեն և շրջսովետի
գործադիր կոմիտեն հասել են այնի բանին, որ շենքերի բնակեցումը կատարվի
հանդիսավոր ձևով: Կազմակերպվում է նորաբնակների միտինգ-հավաք, որից
հետո շրջսովետի գործկոմի ղեկավար աշխատողները հանդիսավոր պայման-
ներում բնակչին են հանձնում բնակարանի օրդերը:
Սովետական ապրելակերպի արգասիքը՝ նոր մարդը, նրա կերպարը, նրա
կոմունիստական բարոյականությունն ու աշխարհայացքը հաստատվում ու
ամրապնդվում են սոցիալիստական համակեցության հետ անհամատեղելի
երևույթների դեմ մղվող անհաշտ պայքարում: Կոմունիստական բարոյակա-
նությանը խորթ են շահամոլությունը, կաշառակերությունը, հարբեցողությու-
նը, խուլիգանությունը: Սոցիալիստական հասարակությանը հակոտնյա այդ
երևույթների դեմ պայքարը պետք է կրի ոչ թե լուսավորչական, այլ մարտա-
կան, հարձակողական բնույթ: Այստեղ մենք ղեկավարվում ենք ՀԿԿ Կենտկոմի
հունվարյան պլենումի (1975 թ.) մշակած միջոցառումներով, որոնք գոհունա-
կությամբ ընդունվեցին նաև մեր շրջանի կուսկազմակերպությունների ու աշ-
խատավորական կոլեկտիվների կողմից: Ահա ինչու այժմ այդ պայքարի առա-
ջին գծում են սկզբնական կուսկազմակերպությունները, որոնք ստանում են
լայն մասսաների ակտիվ աջակցությունը:
Անբարոյական ամեն մի արարք պետք է դատապարտվի, նրա շուրջը պետք
է ստեղծվի հասարակական շիկացած մթնոլորտ: Այդ նպատակով կուսշրջկո-
մին և խոշոր սկզբնական կուսկազմակերպություններին կից ստեղծվել են հա-
սարակական կարծիքի հանձնաժողովներ, որոնք իրենց առաջին քայլերն են ա-
նում հասարակական կարծիքի արդյունավետ ներգործության ասպարեզում:
Սակայն արդյունքները դեռևս անբավարար են: Կուսակցական, արհմիութե-
նական, կոմերիտական առանձին կազմակերպություններ դեռևս թույլ են
պայքարում սովետական ապրելակերպին խորթ, հասարակայնորեն վտանգա-
վոր այնպիսի երևույթի դեմ, ինչպիսին է հարբեցողությունը: Հանրահայտ է
մեր հասարակության մեջ ընտանիքի վճռական դերն ու նշանակությունը դաս-
տիարակության գործում: Եվ, չնայած այդ ճշմարտությանը, առանձին սկզբնա-
կան կուսկազմակերպություններ ընտանիքի ստեղծումը համարում են անձնա-
կան գործ, ակտիվորեն չեն մասնակցում դրա ամրապնդմանը: Դրանով պետք
է բացատրել, որ ինչպես հարբեցողության, այնպես էլ ամուսնալուծության
դեպքերը մեր շրջանում զգալիորեն ավելացել են:
Այս ամենն, ինչ խոսք, անհանգստացնում են մեզ: Շրջկոմն ու սկզբնա-
կան կազմակերպությունները գործնական քայլեր են անում սոցիալիստական

համակեցության հակոտնյա այդ երևույթները կանխելու համար: Շրջկոմի բյուրոյում և կուսակցական ժողովներում քննարկվում են դրանց դեմ պայքարի ուժեղացման հարցերը: Շրջկոմին կից ստեղծված իրավաբանական համալսարանի, հասարակական կարգի պաշտպանության կամավոր դրուժինաների, ՀԼԿԵՄ շրջկոմի «Կոմերիտական լուսարձակ» շտաբի, ստորին մամուլի գործունեությունը, որ վերջերս նկատելիորեն աշխուժացել է, ծառայում է սոցիալիստական համակեցությանը խորթ երևույթների վերացմանը: Շատ կոլեկտիվներ քննարկում են իրենց անդամների կատարած ամեն մի վատ արարք, հասարակական պարսավանքի ենթարկում նրանց: Կոլեկտիվներում պարբերաբար կազմակերպվում են հարբեցողության և մյուս հակահասարակական երևույթների դեմ մղվող պայքարին նվիրված դասախոսություններ:

Սովետական ապրելակերպի ամենաբնորոշ կողմերից մեկը ՍՍՀՄ ժողովուրդների միասնական պայքարն է, նրանց սոցիալիստական համագործակցությունը՝ հանուն կոմունիստական հասարակարգի կառուցման: Մեր երկրում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո ՍՍՀՄ-ում ապրող ժողովուրդների և ազգերի հարաբերությունների մեջ առաջին անգամ հաստատվեցին բարեկամության ու եղբայրության, իրավահավասարության ու փոխօգնության սկզբունքները: «Մեր երկրում,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— ծնվեց և ամրապնդվեց աշխատավոր մարդկանց մեծ եղբայրությունը, որոնք, անկախ ազգային պատկանելությունից, միավորվել են դասակարգային շահերի և նպատակների ընդհանրությամբ, ստեղծվեցին պատմության մեջ չտեսնված հարաբերություններ, որոնք մենք իրավամբ անվանում ենք ժողովուրդների լենինյան բարեկամություն» (Լենինյան կուրսով, հ. 4, «Հայաստան» հրատ., 1974, էջ 67):

Ժողովրդական տնտեսության, մշակույթի և մյուս բնագավառներում յուրաքանչյուր հանրապետության հաջողություններն արդյունք են նաև ՍՍՀՄ մյուս հանրապետությունների անշահախնդիր և եղբայրական օգնության: Մեր շրջանի «Ալմաստ» գործարանն արհեստական ալմաստի ստացման անհրաժեշտ նյութերն ստանում է ՌՍՖՍՀ-ի, Ուկրաինայի, Բելոռուսիայի տարբեր ձեռնարկություններից, իսկ նրա արտադրանքը առաքվում է Միության համարյա բոլոր հանրապետությունները և սոցիալիստական երկրներ: Շրջանի քարի և սիլիկատների գիտահետազոտական ինստիտուտի գիտնականների կողմից մարմարի գեղարվեստական մշակման նոր եղանակը լայն կիրառություն է գտել Ուզբեկական ՍՍՀ քարի մշակման ձեռնարկություններում: «Հայպետնախագիծ» ինստիտուտի ինժեներները սիրով հանձն առան ԲԱՄ-ի դժվարին հատվածներից մեկի նախագծումը: Շրջանի դպրոցականները նամակագրական սերտ կապերի մեջ են երկրի բազմաթիվ դպրոցների կոլեկտիվների հետ: Նրանք հաճախ լինում են միմյանց մոտ, կատարում փորձի փոխանակում: Շրջանում մի քանի տարի է, ինչ անցկացվում են միութենական հանրապետությունների և սոցիալիստական երկրների օրեր և այլ հետաքրքրական միջոցառումներ:

Սոցիալիստական ապրելակերպի էական կողմերից է հասարակության անդամի կենցաղը, մարդու անձնական կյանքի ոլորտը: Հասարակության յուրաքանչյուր անդամի նյութական և կուլտուր-կենցաղային պայմանների բարելավումը, մարդու հոգևոր, կուլտուրական աճը նպաստում են սովետական ապրելակերպի արմատավորմանը: Կուսակցության Սովետականի շրջկոմը, շրջսովետի գործադիր կոմիտեն և սկզբնական կուսկազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում շրջանում կոմունիստական կենցաղավարության հաստատմանը:

Բնակչության արագ աճը (վերջին երեք տարում այն ավելացել է 60 հազար մարդով), նրա շրջանում տարվող աշխատանքի արդի պահանջները նոր խնդիրներ են հարուցում շրջանային կուսակցական, սովետական մարմինների և մյուս կազմակերպությունների առջև: Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործը կուսկազմակերպություններից պահանջում է՝ ակտիվորեն պայքարել նոր կենցաղի ու սովորությունների արմատավորման համար,



բարձրացնել մարդկանց հասարակական ակտիվությունը, գտնել ու այդ ասպարեզում արմատավորել աշխատանքի նոր, առավել արդյունավետ ձևեր: Օգտագործելով Լենինգրադ և Սևաստոպոլ քաղաքների փորձը, շրջանը բաժանել ենք 26 միկրոշրջանների: Բոլոր շենքերում, բնակչության անմիջական մասնակցությամբ, ընտրվել են տնային կոմիտեներ, իսկ վերջիններս իրենց հերթին ստեղծել են տեղամասային խորհուրդներ, որոնցից յուրաքանչյուրին կից գործում են հասարակական կարգի պահպանման, քաղաքական-մասսայական աշխատանքի, առևտրական օբյեկտները հսկող և այլ հանձնաժողովներ, ինչպես նաև ընկերական դատարաններ: Տնային կոմիտեները և տեղամասային հանձնաժողովները լուծում են տվյալ շենքի, միկրոշրջանի բնակչության հետ առնչվող կուլտուր-կենցաղային, սանիտարահիգիենիկ և այլ հարցերը: Տնային կոմիտեների, տեղամասային խորհուրդների, վերջիններիս կից հանձնաժողովների կազմում ընտրված են ավելի քան 4.000 ակտիվիստներ, որոնցից 1.600-ը կենսաթոշակառուներ են:

Ստեղծված այս օղակները առաջին քայլերն են անում: Նրանք բնակչությանն ակտիվորեն ներգրավում են շրջանի բարեկարգման, կանաչապատման գործին, անցկացնում լավագույն շենքի, բակի մրցույթներ, բակերում կառուցում են պարզ տիպի սպորտային և երեխաների խաղահրապարակներ: Բնակչության համար կազմակերպվում են քաղաքական ու գիտական թեմաներով զրույցներ, դասախոսություններ, հարց ու պատասխանի ցերեկույթներ: Շրջանում ըստ բնակության վայրի տարվող աշխատանքի աշխուժացումը էականորեն կնպաստի սովետական ապրելակերպի ավելի խոր արմատավորմանն ու զարգացմանը:

ՍՄԿԿ XXV համագումարը, հանգամանորեն վերլուծելով և ընդհանրացնելով երկրի տնտեսական ու սոցիալ-քաղաքական զարգացման գլխավոր արդյունքները, նոր խնդիրներ է դրել կուսակցական, սովետական մարմինների, սկզբնական կուսկազմակերպությունների և ողջ ժողովրդի առջև՝ սովետական ապրելակերպի հետագա զարգացման ու կատարելագործման ասպարեզում: Սովետական երկրի առաջընթացը, աշխատավորների նյութական և կուլտուրական մակարդակի աննախընթաց աճը, կոմունիստական բարոյականության նորմերի համընդհանուր հաղթանակը այն նախադրյալներն են, որոնք նոր աստիճանի կբարձրացնեն սովետական մարդկանց ապրելակերպը:

Մեր՝ սովետական ապրելակերպի հոյակապ նվաճումները, հիրավի, մեծ Հոկտեմբերի հաղթանակի արգասիք են, հաղթանակ, որի 60-ամյա պանծալի տարելիցը մեր շրջանի աշխատավորները նախապատրաստվում են դիմավորել աշխատանքային նորանոր սխրանքներով:

# ԼՈՌՎԱ ՋՈՐԻ ՀՐԱՇՔԸ

(ԱԿՆԱՐԿ)

ԿԻՆՈՍՏՈՒԴԻԱՅԻՑ ԻՆՁ հայտնեցին, թե հաստատված է քո սցենարը, ռեժիսորը ցանկանում է նախնական զրույց ունենալ: Մենք հանդիպեցինք, ծանոթացանք: Ռեժիսորը բարեհամ երիտասարդ էր ու ինձ խոստովանեց, որ ինքը, հրապուրված լինելով արվեստներով, առիթ չի ունեցել առնչվելու պատմական թեմաներին: «Ահա թե ինչու,— ասաց նա,— մինչև ռեժիսորական սցենար կազմելը, ցանկացա զրուցել ձեզ հետ, պարզել ինձ համար որոշ մանրամասներ»: Մենք պայմանավորվեցինք այսպես. ես կկարդամ սցենարը, և տեղնուտեղը կլուծենք մեր մնացած հարցերը:

— Սկսենք վերնագրից,— ասաց ռեժիսորը,— ինչո՞ւ եք սցենարը վերնագրել՝ «Կայծից բոց բռնկեց»: Արդյոք դա չափազանց պարտավորեցնո՞ղ չէ:

— Գուցե և պարտավորեցնող է: Սակայն հայտնի իրողություն է, որ լենինյան «Իսկրայի» գաղափարները մեր դարասկզբին հասել են Լոռու լեռները, և Հաղպատի հեղափոխական դեպքերի նկարագրությունը տպագրվել է «Իսկրա» լրագրում: Ահա թե ինչու իմ սցենարն սկսված է այսպես.

«Դանդաղորեն էկրանի ներքևից բարձրանում է «Իսկրա» թերթը: Ամբողջ էկրանը լցվում է թերթով: Լսվում է հաղորդավարի ձայնը.

— Լենինյան ճշմարտության կայծը փայլատակեց ռուսական անծայրածիր երկրում, ու նրա անմար լույսը հասավ նաև Հայոց հինավուրց աշխարհը:

Հաղորդավարի վերջին բառերի հետ էկրանի վրա, ասես թերթի միջից, հայտնվում են Լոռու անտառածածկ լեռները: Կամերան մոտենում է, մոտենում, ու մենք տեսնում ենք Հաղպատ գյուղը:

— Գիտե՞ք ինչ,— ընդհատեց ինձ ռեժիսորը,— ես կարող եմ թվարկել այդպիսի սխեմայով սկսվող տասնյակ կինոնկարներ: Մենք պետք է նոր խոսք ասենք, նոր ձևով սկսենք, այլապես մեր ֆիլմը չեն դիտի:

Իմ ապագա կինոնկարի հնարավոր անհաջողությունից վհատվեցի: Այդ ժամանակ ռեժիսորն ինձ հուսադրեց. «Դուք,— ասաց,— եղել եք դեպքերի վայրերում: Գուցե ունեցել եք ֆիլմն սկսելու մի ուրի՞շ տարբերակ: Չի՞ եղել այդպիսի բան»:

— Եղել է: Տարիներ առաջ գտնվում էի Ախթալայի հանգստյան տանը: Մի օր փորձեցի տեսարաններ նկարել: Թղթի վրա ուրվագծվել էին շինության կոնտուրները, երբ զգացի, որ թիկունքիս մոտ մարդ կա: Ետ նայեցի. տարիքավոր տղամարդ էր: Նա ուշադիր նայեց նկարին, հետո թե.

— Շա՜տ բաներ են անցել այս շենքի գլխով:

— Իսկ ի՞նչ է եղել,— հարցրի անծանոթին:

— Հայաստանում առաջին խորհրդային մարմինը նստել է այս շենքում և այն էլ՝ 1918 թվականին:

— Ուրեմն սա հի՞ն է այդքան:

— Հին է: Անցյալներում այս վիլլան պատկանում էր կալվածատեր Թարաթովին: Հետո անցավ Առամյանցին: Հղփացած մարդ էր էդ Թարաթովը, ու մի օր թղթախաղում նա տանուլ տվեց Լոռվա իր կալվածքները:

— Ի՞նչ կալվածքներ:

— Ախթալայից բացի, Թարաթովը կալվածքներ ուներ նաև Հաղպատում: Հաղպատցիները կալվածատիրոջը տարեկան վճարում էին իրենց բերքի մեկ քառորդը: Իսկ դա կազմում էր՝ 1.400 փութ ցորեն, ութ փութ յուղ, քսան փութ պանիր: Արոտավայրերի դիմաց նա ստանում էր 1.300 ռուբլի՝ ամեն մի ծխից միջին հաշվով չորս ռուբլի և էլի ուրիշ հարկեր: Մի օր էլ կալվածատիրոջ խելքին փչեց տարբեր տեղերում գտնվող իր բոլոր հողերը միացնել, դարձնել ամբողջական: Իսկ գյուղացիները չուզեցին իրենց առանց այն էլ փոքրիկ հողակտորները զիջել հարուստին: Այդ ժամանակ Թարաթովը հրամայեց՝ ով անցնի կամրջի վրայով, պետք է վճարի 40 կոպեկ: Երբ անասունն անցնի՝ էլի 40 կոպեկ: Է՜, հաղպատցիներն այլևս չդիմացան կալվածատիրոջ կամայականություններին ու 1903 թվականին ապստամբեցին: Եկան ցարական ստրաժնիկները, հետո կազակները եկան, կրակեցին անզեն գյուղացիների վրա...

— Հիանալի է,— բացականչեց ռեժիսորը,— այդպես էլ կսկսենք մեր ֆիլմը: Ա՜յ թե լիներ նաև դեպքերի գոնե մի կենդանի վկա. այն ժամանակ ձեր այդ տարիքավոր անծանոթի փոխարեն նա՛ կպատմեր:

— Ինձ պատմել է հենց ինքը՝ դեպքերի վկան՝ 1905 թվականից կոմունիստ, հաղպատցի Շաքար Բեջանյանը:

— Սիրելիս,— հանդիմանեց ինձ ռեժիսորը,— որ ձեզ պատմել է, դա դեռ քիչ է: Ես կուզենայի, որ այդպիսի մի մարդ պատմեր մեր ֆիլմում:

Իսկ երբ ռեժիսորն իմացավ, որ Շաքար Բեջանյանը ապրում է իր հայրենի Հաղպատ գյուղում, հրճվանքը զսպել չկարողացավ:

— Մենք հենց վաղը կգնանք նրան նկարահանելու: Ախր մեծ մարդ է, մեկ էլ տեսար... Հա՛, դուք որտե՞ղ կանգ առաք: Կարծեմ այսպես էր. եկան կազակները, կրակեցին անզեն գյուղացիների վրա... Իսկ հետո՞:

— Հետո անհավասար կռվում զոհվեցին մի շարք հաղպատցիներ, ապա պրոֆեսիոնալ հեղափոխականներ Ասատուր Կախոյանը, Սիմոն Իսրայելյանն ու Մելիք Մելիքյանը (Դեդուշկա) 1903 թվականի հունիսին Հաղպատում հիմնեցին ՌՍԴԲԿ-ի խմբակ: Ինչպես Հաղպատի անցքերի, այնպես էլ Ալավերդու հանքերում և գործարաններում տեղի ունեցած հեղափոխական շարժումների, գործադուլների ու ցույցերի մասին բավականաչափ գրականություն կա, գուցե կնկարահանենք այդ գրքե՞րը:

— Համաձայն եմ, այդպես լավ է, նկարահանելիս կօգտվենք այդ գրքերից:

Հեղափոխական շարժումները չմարեցին: 1906 թ. հոկտեմբերին Հաղպատում, Արջաղբյուրի մոտ, Ստ. Շահումյանի ղեկավարությամբ, տեղի ունեցավ Լոռու սոցիալ-դեմոկրատական տասը կազմակերպությունների առաջին կոնֆերանսը: Ստ. Շահումյանը զեկուցեց ընթացիկ մոմենտի և Լոռու կուսկազմակերպությունների խնդիրների մասին: Ընտրվեց Լոռու սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների գավառային կոմիտե՝ Ասատուր Կախոյանի գլխավորությամբ:

Հաղպատի հինավուրց աղբյուր-հուշարձանի մոտ երկհարկանի մի տուն կա: Նրա առաջին հարկում Հաղպատի կուսբջջի քարտուղար Մարտիրոս Թանդիլյանը խանութ ուներ: Ապրանքը վաճառելիս Մարտիրոսը փաթեթի հետ դնում էր հեղափոխական թռուցիկ, որևէ գրքույկ...

— Մենք կնկարահանենք աղբյուր-հուշարձանը,— ասաց ռեժիսորը,— ապա՝ տունը, հետո, կրկնակի պատկերմամբ, կերևա հեղափոխականի դիմանկարը:

— Չի կարող երևալ,— ասացի ռեժիսորին,— որովհետև Մարտիրոսը չի հասցրել լուսանկարվել: Նրա անմոռաց պատկերը մնացել է ժամանակակիցների հիշողության մեջ՝ որպես թիկնեղ, բարձրահասակ ու շիտակ լոռեցի: Կարճ է տևել Մարտիրոս Թանդիլյանի կյանքը: Մի օր, դա 1919 թ. էր, երբ Մարտիրոսը վերադառնալիս է եղել հարևան Ակներ գյուղի կուսբջիջի ժողովից, ձորում դարանակալ թշնամին թիկունքից կրակել է նրա վրա: Մարտիրոս Թանդիլյանն ընկել է կուսակցական գործի ճամփին՝ սերունդներին հիշատակ թողնելով Հաղպատի կուսբջիջը և մեկ էլ իր տունը, որ տարիներ հետո դարձավ Հաղպատի հեղափոխության թանգարան...

Ինձ թվաց, թե ռեժիսորն այլևս չի լսում: Ես դադարեցրի ընթերցումը: Նա լուռ ու մտախոհ նայեց ինձ, ապա ասաց.

— Ա՛յ, տեսնո՞ւմ եք, դա կոմունիստին նվիրված գեղարվեստական կինոնկարի հուզիչ թեմա է: Այս վավերագրական ֆիլմն ավարտելուց հետո եկ միասին մի գեղարվեստական ֆիլմի սցենար գրենք Մարտիրոս Թանդիլյանի ու նրա համագյուղացիների մասին:

Անչափ ոգևորված՝ մենք համաձայնության եկանք ու շարունակեցինք մեր վավերագրական կինոնկարի սցենարի ընթերցումը:

1917 թվական: Հաղթանակեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Ու մեծ Հոկտեմբերի կենարար շունչը Նևայի ափերից հասավ ծվատված ու հոշոտված Հայոց աշխարհը...

1918 թ. սկզբներին Հաղպատի կոմունիստների ղեկավարությամբ շրջակա գյուղացիները գրավեցին կալվածատեր Առամյանցի հողերն ու վիլլան: Լոռու շրջանում հայտարարվեց խորհրդային իշխանություն, հեղկոմներ կազմվեցին գյուղերում... Սակայն երեք ամիս անց՝ 1918 թ. մայիսի վերջերին, հաղպատցիների ապստամբությունը ճնշվեց գեներալ Ղորղանյանի կողմից: Լոռվա առաջին խորհրդային իշխանությունը տապալվեց: Հետո տեղի ունեցան նոր ցավալի իրադարձություններ՝ Լոռին անջատվեց Հայաստանից, հայտարարվեց Չեզոք գոտի:

Ծանր ու դժվարին պայմաններում Լոռվա հանքերում ու գյուղերում ավելի եռանդուն են գործում կոմունիստները: Լոռու աշխատավորների զինված ապստամբության շտաբի պետ Հովսեփ Լազյանը ՌԿ(բ)Կ Կենտկոմի Կովկասյան բյուրոյին հղած զեկուցագրում նշում է, որ Լոռու բնակչությունը վաղուց աչքի էր ընկնում բոլշևիկյան ոգով առանձնահատուկ հեղափոխականությամբ: Բոլշևիկյան կողմնորոշումը (Չեզոք գոտու) բնակչության մեջ առանձնապես ուժեղացավ Հայաստանի խորհրդայնացումից հետո: Այդ ժամանակից ամբողջ գոտին արագորեն ծածկվում է բոլշևիկյան կուսակցության ընդհատակյա կազ-

համապատասխանում են միջազգային ստանդարտի պահանջներին: Օրինակ, այստեղ թողարկվող պղնձարջասպի որակը ավելի բարձր է միջազգային ստանդարտից և մեծ պահանջարկ ունի նաև արտասահմանյան երկրներում: Անցած տարի որակի նշանի են արժանացել նաև Թումանյանի հրակայուն նյութերի գործարանի թողարկած եռաշերտ ծայրապանակները…

— Ուրեմն, Ալավերդուց բացի, կա և ուրի՞շ քաղաք:

— Ավելի ճիշտ՝ քաղաքատիպ ավաններ. Ախթալան, Թումանյանը, Շամլուղը: Ուշագրավ է Թումանյան ավանի ստեղծման պատմությունը: Երկրաբանները Լոռու ձորում հայտնաբերեցին կավի մի տեսակ, որից ստացվում են հրակայուն աղյուսներ և այլ նյութեր: Դրանց կարիքը հացի ու ջրի պես զգում են մետաղաձուլական ձեռնարկությունները: Եվ պատերազմի տարիներին ՍՍՀՄ սև մետալուրգիայի մինիստր Ի. Թևոսյանի առաջարկով Լոռու ձորում կառուցվում է հրակայուն նյութերի գործարան: Իսկ մոտակայքում բնակավայր չկար: Որոշվեց ձորահովտում հիմնել բանվորական ավան: Վարդագույն տուֆից կառուցվեցին բազմաթիվ բնակելի տներ, մշակույթի պալատ, վարչական շինություններ, և սրանից ուղիղ երեսուն տարի առաջ Հայաստանի քարտեզի վրա հայտնվեց ևս մի ոստան ու կոչվեց Թումանյան:

Շամլուղը՝ հանքագործների ավանը, շուտով կբոլորի իր գոյության չորրորդ տասնամյակը: Գրեթե նույն տարիքն ունի նաև Ախթալան, որը թերևս ամենից գեղեցիկն է: Անցյալներում նրա անունը եղել է Արծաթահանք: Օտարների տիրապետության ժամանակ փոխվել է հայկական անունը ու դարձել Ախթալա: Երբ դուք ավտոմեքենայով գնաք դեպի Նոյեմբերյան, Ախթալա երկաթուղային կայարանի մոտ մի ճանապարհ կթեքվի դեպի ձախ: Այդ ճամփան այնուհետև կմտնի նոր գետահովիտ ու կսկսի բարձրանալ: Ապա ձեր առջև կբացվի սքանչելի մի պատկեր. կենտրոնում, բարձունքի վրա հինավուրց վանքն է, նրա աջ կողմում, ասես բարձրաբերձ կղզու վրա, Ախթալայի հանգստյան տունն է, ձախ կողմում, սարահարթում փռված նոր ավանը՝ վարդագույն տուֆից կերտված բազմահարկ բնակելի տներով, մշակույթի օջախներով, վարչական շենքերով, լայնահուն փողոցներով, հրապարակով… Ախթալան հայտնի է պղնձի ու ազնիվ մետաղների հանքերով, հանքաքարի հարստացման ֆաբրիկայով, հանգստյան տնով, նոր կառուցվող պահածոների գործարանով, որը թողարկելու է անուշահամ մրգերի պահածոներ…

— Քանի որ խոսք բացեցիք մրգերի մասին,— ասաց ռեժիսորը,— նշանակում է այդ շրջանը նաև գյուղատնտեսություն ունի:

— Այո՛, իհարկե: Դարեր ի վեր լոռեցիները զբաղվել են դաշտավարությամբ, անասնապահությամբ, այգեգործությամբ… Բայց լոռեցու ունեցած «մի կտոր չոր հացը» կախված է եղել երկնքից:

Անցել են ժամանակները, և լոռեցի նոր սերունդների համար պարզապես անհավատալի են հին-հին օրերի պատմությունները: Նրանց աչքի առջև իսկական հրաշքներ կատարվեցին Լալվարի լանջերին: Հեռու- հեռուներից մարդիկ ջրանցքներ բացեցին ու Կալինինոյի շրջանից ոռոգման ջուր հասցրին մինչև Օձունի սարահարթ: Քանի-քանի՜ դարեր լոռեցիները կարոտով նայել են Դեբեդի փրփրաբաշ ջրերին, որ խորունկ ձորում գալարվելով գնացել-կորել են գոր տեղը: Հետո ափսոսանքով նայել են Լալվարից դեպի կիրճը ձգվող հարթեցված սարահարթերին ու երազել ջրերի մասին…

Տարիներ առաջ էր. Դեբեդի ափին, Շնող գյուղի մոտերքում, շինարարական աշխատանքներ սկսվեցին: Հետաքրքրասեր մի լոռեցի հարցրեց ճամփի մոտ կանգնած բանվորին:

— Ի՞նչ բանի եք:

— Ջրհան կայան ենք շինում:

— Ջուրը ո՞ւր պիտի հանեք:

— Հրես հա՜,— բանվորը ցույց տվեց դիմացի բարձունքը,— էն սարի գլուխը պիտի տանենք:

— Ըմբո՜:

— Էդ ի՞նչ ա ասում,— մոտեցավ լոռեցու ընկերը:

— Շաշ-շաշ խոսում ա, էլի: Մարդ ա գտել՝ ձեռ ա առնում…

Չհավատացին: Բայց հետո, երբ բանվորները կառուցեցին կայանը, և երկաթե խողովակների շարանը բարձրացավ դեպի սարահարթ, ասացին.

— Այ տա, ճիշտ որ ջուրը սարի գլուխը հանեցին: Հիմի այրումցիք էն հողերում դրախտ կշինենք:

Եվ իրոք, այդպես եղավ: Շնողի սովխոզը, ջրհան կայանի շնորհիվ 900 հեկտար նոր այգիներ հիմնեց: Հետո կառուցվեց Շնող—Արճիսի ջրհան կայանը, և Դեբեդի ջրերը նորից բարձրացան սարահարթ, հարյուրավոր հեկտար հողերի կյանք պարգևեցին…

Եղան նաև ուրիշ հրաշքներ. Լալվարի ու Ձաթինդաղի լանջերին, սարահարթերում հայտնվեցին տրակտորներ, շարքացաններ, կոմբայններ և ուրիշ մեքենաներ: Լոռեցիները հողն սկսեցին մշակել մեքենաներով ու տարիների հետ հասան զգացնող արդյունքի: Անցած տարի, օրինակ, Ծաթերի կոլտնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 45,3 ցենտներ հացահատիկ, իսկ Դանուշավանի սովխոզը՝ 34,2 ցենտներ:



Մեքենան, էլեկտրականությունը, ժամանակակից տեխնիկայի նորույթները մուտք գործեցին նաև անասնապահական ֆերմաները: Մղարթի, Օձունի, Շամուտի, Դանուշավանի, Լորուտի անասնապահների նվիրված աշխատանքի շնորհիվ կաթի վաճառքի տարեկան առաջադրանքը անցած տարի կատարվեց 113 տոկոսով: Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ, Օձունի սովխոզի կթվորուհի Ծաղկո Հակոբյանն իր խնամած ամեն մի կովից ստացավ 3.321 կգ կաթ: Այժմ լայն շարժում է ծավալվել՝ յուրաքանչյուր կովից 2.500 կգ կաթ ստանալու համար: Թումանյանի շրջանում դա բարձր ցուցանիշ է:

— Չեք գտնո՞ւմ, որ թվերը անչափ շատ են,— բողոքեց ռեժիսորը,— դրանց մեծ մասից, գուցե և բոլորից պետք է ձերբազերծվել: Ախր կինեմատոգրաֆիան իր խնդիրներն ունի, նրան խորթ է վիճակագրությունը:

— Գուցե, իրոք, շատ թվեր կան: Սակայն, հավատացեք ինձ, դրանք անհրաժեշտ են: Տեսեք, թե մի անգամ ինչ պատահեց: Զրուցում էի Շնողի սովխոզի դիրեկտոր Կամսար Ներեկյանի հետ: Հետաքրքրվում էի անտեսության վիճակով: Նա իրար ետևից մի շարք թվեր ներկայացրեց: Անզգուշաբար նրան ասացի. «Եկեք մեր ասելիքը թվերով չծանրաբեռնենք, դա ընթերցողին չի հետաքրքրի»: Իսկ նա խայթեց. «Հա՜, իհարկե, դեղձը համով է, իսկ նրա վերաբերյալ թիվը՝ անհետաքրքրական»: Ես ներողություն խնդրեցի, իսկ նա չէր հանգստանում. «Ախր ձեզ համար ձանձրալի էդ մի թվի մեջ հարյուրավոր մարդկանց աշխատանք կա»: Եվ նա ճիշտ էր ասում:

Ահա ես էլ, հարգանքով վերաբերվելով գյուղացու աշխատանքին, նշել եմ, որ Թումանյանի շրջանի այգեգործներն անցած տարի պտուղների արտադրության ու վաճառքի առաջադրանքը կատարեցին 106, իսկ արմատապտղինը՝ 113 տոկոսով: Որպես ռեժիսոր, դուք կարող եք նկարիչ հրավիրել, ու նա կգտնի թվերը մատուցելու այնպիսի ձևեր, որ ֆիլմը դիտողը երկար ժամանակ կհիշի, թե ինչպես Շնողի և Ճոճկանի սովխոզների շնորհիվ անցած տարի շրջանում արտադրվել է 6.077 տոննա պտուղ, նախատեսված 5.700 տոննայի դիմաց: Հետո կամերան կտեղափոխվի Շնողի սովխոզ, ու էկրանի վրա կերևան Աշոտ Մեհրաբյանն ու նրա բրիգադը: Այդ նրանք էին, որ 65-ի փոխարեն յուրաքանչյուր հեկտարից ստացան 117 ցենտներ պտուղ: Նկարահանված տեսարանների հիման վրա հաղորդավարը կպատմի նաև Վարշամ Բարսեղյանի և Ճոճկանի սովխոզի՝ Սերյոժա Անդրեասյանի բրիգադների մասին: Եվ կասի, որ Անդրեասյանի բրիգադը 175 տոննա ավելի բերք ստացավ, քան նախատեսված էր պլանով:

Ռեժիսորը ուշադիր նայում էր ինձ. ես դադարեցի ընթերցումը: Նա մտախոհ ասաց.

— Ես անպայման նկարիչ կհրավիրեմ ու մենք, կարծում եմ, մի հնար կգտնենք, այնպես կանենք, որ մեր ֆիլմը դիտելիս քաղաքացիները չձանձրանան, իսկ գյուղացիներն էլ գոհ մնան: Իսկ հիմա եկեք տեսնենք, թե ինչպե՞ս ենք պատկերելու լոռեցիների կյանքը: Մենք խոսեցինք նրանց պայքարի ու աշխատանքի մասին: Այդ բոլորը լավ է: Իսկ կենցա՞ղը: Չէ՞ որ մարդն առանց կենցաղի չի լինում:

— Մենք կնկարահանենք գեղեցիկ, հարմարավետ բնակելի տներ Ալավերդում, Ախթալայում, Օձունում, Շնողում, Դսեղում: Կամերան կմտնի ներս, տանտերերի հետ ցույց կտա բնակարանի ճաշակով տեղադրված կահույքը, հեռուստացույցն ու մագնիտոֆոնը, սառնարանն ու գազի վառարանը, հեռախոսն ու լվացքի մեքենան, ու այդ կադրերի վրա կհնչի հաղորդավարի ձայնը. «Անցած տարի միայն Ալավերդի քաղաքում բնակարանամուտ են տոնել բանվոր-ծառայողների 190 ընտանիքներ: Նախատեսված 140-ի դիմաց գազիֆիկացվել է 245 բնակարան: Սանահինի սարահարթում շահագործման է հանձնվել երկու հազար համարով հեռախոսակայանը: Սպասարկման նոր ծառայություններ են բացվել Դսեղ, Ղաչաղան, Աքորի, Ճոճկան, Թեղուտ գյուղերում…

— Ահա թվարկեցիք բազմաթիվ գյուղերի անուններ, սակայն նրանցից ոչ մեկի մասին մեր հանդիսատեսը գաղափար կազմել չի կարող: Մենք պետք է ցույց տանք երկու-երեք գյուղ,— առաջարկեց ռեժիսորը,— Եվ լավ կլինի, եթե սկսենք Հաղպատից…

— Հաղպատի անցյալին մենք արդեն ծանոթ ենք: Իսկ վերափոխությունները այնտեղ սկսվեցին սովետական իշխանության տարիներին: Հաղպատցիների համար իրադարձություն էր նոր, ասֆալտապատ ճանապարհի կառուցումը, որը Դեբեդի ափից ձգվեց սարն ի վեր, հասավ գյուղամեջ, մինչև տաճարի մուտքը: Կառուցվեցին դպրոց, մշակույթի տուն, խանութ, կապի հանգույց: Գյուղացիները մենատներ շինեցին իրենց համար ու շինում են նաև հիմա: Գյուղը մեծացավ, ընդարձակվեց, ավելի գեղեցկացավ: Նրա մի կողմում հանդիսավոր խորհրդավորությամբ բարձրանում են միջնադարյան կոթողների գմբեթներն ու զանգակատունը, մյուս կողմում առանձնատների սպիտակ, դեղնավուն, կարմիր տանիքներն են: Հաղպատն ասես թիկնել է անտառածածկ լեռան լանջին ու հիանում է Լոռվա աշխարհի թովչանքներով:

Հաղպատը դարձել է տուրիստական երթուղու հիմնական կետերից մեկը: Տարվա բոլոր ամիսներին մարդատար ավտոմեքենաները Հաղպատ

են հասցնում ոչ միայն մեր հանրապետության աշխատավորների բազմաթիվ խմբերի, այլև միութենական ու արտասահմանյան հազարավոր տուրիստների:

Հաղպատցիները մեքենաներով են մշակում իրենց հողերը, սարերում անասուններ պահում, բերք ու բարիքով լցնում իրենց տներն ու պետության շտեմարանները:

Լոռու գյուղերի համար տիպական է Դսեղը: Եվ գուցե այն պատճառով, որ այն մեծ բանաստեղծի ծննդավայրն է: Ով երբևէ չի եղել Դսեղում, այն կպատկերացնի թումանյանական նկարագրությամբ.

*Մեր գյուղն էն է, որ Հպարտ,*
*Լեռների մեջ միգապատ,*
*Խոր ձորերի քարափին՝*
*Ձեռը տըված ճակատին՝*
*Միտք է անում տըխրադեմ...*

Դսեղն այլևս տխրադեմ չէ. վերափոխվել, անճանաչելի է դարձել: Այստեղ նույնպես Դեբեդի ափից ասֆալտապատ ճանապարհը բարձրացել է, մտել գյուղամեջ: Գյուղի կենտրոնն այնպես է վերակառուցվել, որ հնից է՛լ բան չի մնացել. ընդարձակ հրապարակ, մշակույթի պալատ, դպրոցի լուսավոր շենք, մի քիչ այն կողմ՝ թանգարան, դսեղցիների երկհարկանի հարմարավետ առանձնատներ, անձնական օգտագործման ավտոմեքենաներ... Այսպիսին է հիմա Դսեղը:

Բայց ինչո՞ւ միայն Դսեղը: Անճանաչելիորեն փոխվել, հարստացել ու զարգացել են Օձունը, Շնողը, Ղաչաղանը, Մեծ Այրումը, շրջանի բոլոր գյուղերը:

Նեսոյի քարաբաղնիսը... Չէ՛, այդ մասին ես չեմ պատմի: Ո՞վ չի հիշում դսեղցի թշվառ գեղջուկի ողբերգությունը: Ու չեմ էլ պատմի այն մասին, թե ինչպես շրջանի բնակավայրերում տասնյակ բուժական կետեր, հիվանդանոցներ, պոլիկլինիկաներ, դեղատներ են գործում: Չեմ խոսի նաև Ալավերդի քաղաքում կառուցվող նոր պոլիկլինիկայի մասին: Ինը հարկանի այդ խոշոր առողջապահական օբյեկտը, որ գործարկվելու է եկող տարի, կունենա թերապևտիկ, վիրաբուժական և այլ բուժական կաբինետներ, լաբորատորիաներ: Առողջապահական հիմնարկությունները լոռեցիների համար արդեն սովորական երևույթ են: Նրանք հիմա իրար հետ խոսելու այլ թեմա ունեն. ո՞ր առողջարանում են հանգստացել արձակուրդի ժամանակ, տուրիստական ի՞նչ ուղերթով են ճանապարհորդել: Միայն լեռնամետալուրգիական կոմբինատի 419 բանվոր-ծառայողներ անցյալ տարի կազդուրվել ու հանգստացել են Սոչիի, Եվպատորիայի, Կիսլովոդսկի, Տրուսկավեցի, Արզնիի, Ջերմուկի և մի շարք այլ առողջարաններում ու հանգստյան տներում, 106 մարդ շրջագայել է արտասահմանյան ու միութենական տուրիստական երթուղիներով, 1.600-ը՝ երկօրյա հանգստի մեկնել հանրապետության տեսարժան վայրերը:

Անգրագետ էր անցյալում Լոռվա գյուղացին: Դպրոց ունեին միայն Օձուն, Շնող, Սանահին գյուղերը: Հիմա շրջանում կա 48 հանրակրթական դպրոց՝ 13 հազար աշակերտով: Գործում են նաև երկու մարզական, երկու երաժշտական, նկարչական դպրոցներ, մասնագիտական-տեխնիկական ուսումնարան , ինդուստրիալ-տեխնոլոգիական տեխնիկում, դպրոց-առողջարան, 49 մանկամսուր-մանկապարտեզ: Ստացվում է այսպես. յուրաքանչյուր չորս բնակչից մեկը սովորող է: Հարյուրավոր պատանիներ ու աղջիկներ բարձրագույն կրթություն են ստանում Երևանում, Կիրովականում, այլ քաղաքներում:

— Մեր ֆիլմի համար հետաքրքրական կլինի երաժշտական դպրոցը,— առաջարկեց ռեժիսորը և ավելացրեց,— գյուղական շրջանում դա երևույթ է:

— Միանգամայն ճիշտ է: Ես զրուցել եմ Ալավերդու երաժշտական դպրոցի դիրեկտոր Էլմիրա Աբաջյանի հետ: Նա ասաց, որ իրենց դպրոցը հիմնվել է 1945 թ. և ունի դաշնամուրի, ջութակի, թավջութակի, քանոնի ու կլարնետի բաժիններ, ուր երաժշտական կրթություն են ստանում 330 աշակերտներ: Նրանց մեծ մասը պղնձագործ բանվորների երեխաներ են: Երաժշտական դպրոց կա նաև Օձուն գյուղում: Մեր դպրոցի սաներն են եղել միջազգային մրցույթի դափնեկիրներ, երգչուհի Մելանյա Աբովյանը և դաշնակահարուհի Սվետլանա Նավասարդյանը:

— Հավանաբար, մենք պետք է մտնենք նաև մշակութային օջախներ,— ասաց ռեժիսորը:

— Առանց դրանց չի լինի,— պատասխանեցի նրան,— և մենք ընտրություն կատարելու ամենայն հնարավորություն ունենք: Պատկերացնո՞ւմ եք, Թումանյանի շրջանի գյուղերում և ավաններում գործում են 12 մշակույթի պալատ, 21 ակումբ, 47 գրադարան: Ակումբներում ու մշակույթի պալատներում գործում են գեղարվեստական ինքնագործունեության 57 խմբեր, ուր ընդգրկված են 635 դաշտավարներ, այգեգործներ, անասնապահներ, գյուղական մտավորականներ:

— Ասացեք, խնդրեմ, ինչպիսի՞ խմբեր են դրանք,— հարցրեց ռեժիսորը:

— Ամեն ինչ՝ երգի-պարի, թատերական, էստրադային, ասմունքողների... Մենք կարող ենք նկարահանել Ղաչաղանի մշակույթի պալատի թատերական խումբը: Այնտեղ կան գյուղացիներ, որ քսան-քսանհինգ տարվա «արտիստական» փորձ ունեն ու այսօր էլ սիրով մասնակցում են ներկայացումներին:

— Հիանալի է,— ոգևորվեց ռեժիսորը,— մենք նրանց անպայման կնկարենք:

— Լոռու ձորում և նրա շուրջը թառած սարահարթերում տեղի ունեցած իրական հրաշքների մասին մեր պատումը կեզրափակի Թումանյանի կուսշրջկոմի առաջին քարտուղար Լևոն Ալավերդյանը:

— Ինչի՞ մասին է նա խոսելու,— հարցրեց ռեժիսորը:

— Նրա ելույթը կվերաբերի ժողովուրդների բարեկամությանն ու շրջանի զարգացման հեռանկարներին:

— Դուք ինչպե՞ս եք պատկերացնում. էկրանի վրա միայն շրջկոմի քարտուղա՞րն է երևալու, թե՞ կլինեն նաև այլ պատկերներ:

— Ընկեր Ալավերդյանի խոսքը ձեզ կհուշի, թե ինչ է հարկավոր անել: Նա կասի. «Ալավերդու հանքերում ու գործարաններում, գյուղերում ու ավաններում կողք-կողքի ապրում ու աշխատում են հայեր ու ռուսներ, ադրբեջանցիներ ու վրացիներ, ուկրաինացիներ ու հույներ, 23 ազգերի ներկայացուցիչներ: Նրանք համախմբված են ինտերնացիոնալ մի համերաշխ ընտանիքում և ունեն մի ընդհանուր նպատակ՝ կյանքում անշեղորեն իրագործել կուսակցության առաջադրած խնդիրները, իրենց համեստ բաժինը ներդնել կոմունիստական հասարակարգի կառուցման գործում: Մեր՝ Թումանյանի շրջանի աշխատավորների բարեկամական կապերը տարածվում են Լոռու ձորից ու Լալվարի լանջերից շատ ու շատ հեռու: Ահա ուշագրավ փաստեր. թողարկված պղինձը, ծծմբաթթուն, պղնձարջասպը, ցինկի, կապարի, պղնձի խտանյութերը, հրակայուն նյութերը, հագուստեղենը, պահածոները, մրգերը առաքվում են եղբայրական ինը հանրապետությունների ավելի քան 450 հասցեներով, իսկ պղնձարջասպը՝ նաև արտասահման:

Մեր շրջանի ժողովրդական տնտեսության զարգացման համար նոր հեռանկարներ են բացվել տասներորդ հնգամյակում: Ինչպես հայտնի է, գունավոր մետալուրգիան մեր հանրապետությունում 1980 թվականին, 1975 թ. համեմատությամբ, աճելու է 138,6 տոկոսով: Դրա մեջ իր մեծ բաժինն ունի Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատը: Այդ ձեռնարկությունում նախատեսվում են վերակառուցման մեծ աշխատանքներ, որոնց ավարտից հետո հնարավոր կլինի ավելի ռացիոնալ օգտագործել ծծմբային գազերը և ծծմբաթթվի արտադրությունն ավելացնել 1,8 անգամ: Վերակառուցվելու են նաև Թումանյանի հրակայուն նյութերի գործարանը և Դսեղի փայտամշակման կոմբինատը: Նախատեսված է այդ երկու ձեռնարկությունների կատարելագործման նպատակով ընթացիկ հնգամյակում ծախսել 14 միլիոն ռուբլի:

Զարգացման նոր աստիճանի կհասնի սննդի արդյունաբերությունը: Դրա համար մեր շրջանում կան լայն հնարավորություններ: Պահածոների գործարանների կարողությունը հանրապետությունում ավելանալու է 135 միլիոն պայմանական տուփով: Դրանից 50 միլիոն տուփը կթողարկվի մեր շրջանում՝ Ախթալայի պահածոների գործարանում:

Շրջանի գյուղատնտեսության աշխատողները ավելի առատ բերք կապահովեն հացային դաշտերից, այգիներից ու մթերքներ՝ ֆերմաներից: Կշարունակվի մարդկանց բնակարանային պայմանների ու ընդհանրապես կենցաղային ծառայությունների բարելավումը, ժողովրդական կրթության. առողջապահության, սոցիալական ապահովության զարգացումը: Կկառուցվեն դպրոցական ու մշակույթի նոր շենքեր, կբացվեն բնակչության սպասարկման բազմաթիվ օբյեկտներ: Մի խոսքով, ընթացիկ հնգամյակը մեր շրջանի համար կլինի տնտեսական ու սոցիալ-կուլտուրական վերելքի արգասավոր ժամանակահատված:

Կուսակցության XXV համագումարը մշակել է մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման վիթխարի ծրագիր, որը նախ և առաջ վերաբերում է «...սովետական մարդկանց բարեկեցության հետագա բարձրացմանը, նրանց աշխատանքի և կենցաղի պայմանների բարելավմանը, առողջապահության, կրթության, կուլտուրայի զգալի առաջադիմությանը՝ այն ամենին, ինչը նպաստում է նոր մարդու ձևավորմանը, անհատի համակողմանի զարգացմանը, սոցիալիստական ապրելակերպի կատարելագործմանը» (ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՅՈՒԹԵՐԸ, էջ 60): Եվ Թումանյանի շրջանի կուսակցական կազմակերպությունը, շրջանի ողջ աշխատավորությունը անշեղորեն ընթանում են ՍՄԿԿ XXV համագումարի նշած ուղիով, պայքարում նրա կանխագծումներն իրականացնելու, մեծ Հոկտեմբերի 60-ամյակն արժանավայել դիմավորելու համար»:

— Ինձ համար ամեն ինչ պարզ է,— ասաց ռեժիսորը,— մի քանի օրից հետո մենք կսկսենք նկարահանումները...

**ԽԱՉԱՏՈՒՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

## ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

# ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ԱՌԱՋԱՏԱՐ ԴԵՐԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ

**Ա. ԼԱՑԻՆ**

*Կոմունիստական շինարարության բարդ խնդիրների լուծման գործում հսկայական դեր է պատկանում մեր հասարակարգի քաղաքական կազմակերպմանը: Մեր կուսակցությունը մշտական ուշադրություն է նվիրում դրա հետագա կատարելագործման հարցերին: «Կատարելով այդ աշխատանքը,— ՍՄԿԿ XXV համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն ելել և ելնում են այն բանից, որ մեր երկրում կառուցված է զարգացած սոցիալիստական հասարակարգ, որը աստիճանաբար վերաճում է կոմունիստականի, այն բանից, որ մեր պետությունը համաժողովրդական պետություն է, որն արտահայտում է ամբողջ ժողովրդի շահերն ու կամքը: Մենք ելել ենք և ելնում ենք այն բանից, որ մեզ մոտ ստեղծվել է պատմական նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը, որի հիմքում ընկած է բանվոր դասակարգի, գյուղացիության, մտավորականության անխախտ դաշինքը՝ բանվոր դասակարգի առաջատար դերի պայմաններում, երկրի բոլոր ազգերի ու ազգությունների բարեկամությունը: Մենք ձգտել ենք նպաստել պետական մարմինների ու հասարակական կազմակերպությունների սեփական ակտիվության համակողմանի զարգացմանը, ըստ ամենայնի խրախուսել նրանց նախաձեռնությունը»:*

*Լինելով աշխատավորների ինչպես հասարակական, այնպես էլ պետական բոլոր կազմակերպությունների ղեկավար ու միավորող կորիզը, սոցիալիստական դեմոկրատիայի սկզբունքների գլխավոր կրողը, բանվոր դասակարգի և ամբողջ ժողովրդի քաղաքական առաջնորդը, կոմունիստական կուսակցությունը շարունակ հոգում է հասարակության և պետության գործերի կառավարմանը մասսաներին առավել լայնորեն մասնակից դարձնելու, անհատի համակողմանի ծաղկման համար պայմաններ ստեղծելու մասին:*

*Լենինյան կուսակցության գործունեության կարևորագույն սկզբունքն այն է, որ նա հենվում է ժողովրդական լայն զանգվածների, առաջին հերթին, բանվոր դասակարգի վրա, որի հետ կապված է երկրի հասարակական-քաղաքական, տնտեսական և կուլտուրական հետագա զարգացումը: Սոցիալիստական հասարակարգի կառուցման ու զարգացման բոլոր փուլերում բանվոր դասակարգը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, առաջատար դեր է կատարում սոցիալիստական պետականության ստեղծման ու կատարելագործման մեջ, նախադրյալներ պատրաստելով, որ այդ պետականությունն աստիճանաբար վերաճի կոմունիստական հասարակական ինքնավարության:*



*Սոցիալիստական պետությունը հասարակությունը սոցիալիզմի և կոմունիզմի հիմունքներով վերափոխելու գլխավոր գործիքն է: Եթե պրոլետարիատի դիկտատուրայի պետության պատմական միսիան և սոցիալական կոչումն այն է, որ նա հանդես է գալիս որպես սոցիալիզմի հիմքերի, իսկ ապա հասուն սոցիալիստական հասարակարգի կառուցման գործիք, ապա համաժողովրդական պետությունը կոմունիզմի կառուցման հիմնական գործիքն է:*

*Սույն կոնսուլտացիայում քննության են առնվում սեմինարում ուսումնասիրվող թեմայի մի քանի հանգուցային հարցեր.*

1. Համաժողովրդական պետությունը պրոլետարիատի դիկտատուրայի շարունակումն ու զարգացումն է:
2. Բանվոր դասակարգը կոմունիստական շինարարության առաջատար ուժն է:
3. Բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության գաղափարա-քաղաքական և սոցիալական միասնությունը, նրա մարմնավորումը սովետական ժողովրդի՝ որպես պատմական նոր հանրության մեջ:

*Սովետական պետությունն ստեղծվել է մոտ 60 տարի սրանից առաջ՝ մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ, որպես պրոլետարիատի դիկտատուրայի պետություն: Դրանում դրսևորվեց սոցիալիստական հեղափոխության կարևորագույն ընդհանուր օրինաչափություններից մեկը, որի էությունն այն է, որ պրոլետարական հեղափոխությունը, որ իրականացնում են աշխատավորական զանգվածները՝ բանվոր դասակարգի գլխավորությամբ և նրա մարքս-լենինյան կուսակցության ղեկավարությամբ, հանգեցնում է պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման, որն անհրաժեշտ է սոցիալիզմի կառուցման և ամրապնդման ողջ ժամանակաշրջանում:*

*Պատմական փորձը սովորեցնում է, որ պրոլետարիատի դիկտատուրայի ձևերը որոշվում են այս կամ այն երկրի կոնկրետ-պատմական պայմաններով, պայմանավորված են նրա տնտեսական զարգացման մակարդակով, դասակարգային ուժերի տեղաբաշխմամբ, դասակարգային սուր պայքարով: Պրոլետարիատի դիկտատուրայի, նրա քաղաքական ձևերի կազմավորման վրա ազդում են ժողովրդի ազգային առանձնահատկությունները և պատմական ավանդույթները, ինչպես նաև արտաքին քաղաքական պայմանները:*

*Մեր երկրում պրոլետարական պետությունը կազմավորվել է Լենինի հայտնագործած սովետների հանրապետության ձևով: Իր գոյության առաջին իսկ օրից այն եղել է, ինչպես և կանխատեսում էր Վլադիմիր Իլյիչը, «...նոր ձևով դեմոկրատական (պրոլետարների ու առհասարակ չունևորների համար) և նոր ձևով դիկտատորական պետություն (ընդդեմ բուրժուազիայի)» (Երկեր, հ. 25, էջ 532—533): Բանվոր դասակարգի ղեկավար դերը պրոլետարիատի դիկտատուրայի սիստեմում ամենևին չի նշանակում, թե նա միայնակ քաղաքական իշխանություն է իրականացնում երկրում: Ընդհակառակը, բանվոր դասակարգն այն իրագործում է աշխատավոր գյուղացիության և աշխատավորների մյուս խավերի հետ դաշնակցած: Դա իսկական ժողովրդական իշխանություն է, արտահայտում է բոլոր աշխատավորների՝ հասարակության բացարձակ մեծամասնության կամքը և ապահովվում է նրանց արմատական շահերը, հանդիսանում այդ մեծամասնության քաղաքական գործիքը:*

*Այն խնդիրների բնույթը (հայրենիքի պաշտպանություն, ողջ հասարակական կյանքի վերակառուցումը սոցիալիստական հիմունքներով, սոցիալիզմի լիակատար, վերջնական հաղթանակի նվաճում), որ լուծվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանում, կանխորոշել է նաև պրոլետարիատի դիկտատուրայի պետության ֆունկցիաները:*

*Նրա կարևորագույն ներքին ֆունկցիաներն են՝ տապալված շահագործող դասակարգերի դիմադրության ճնշումը, սոցիալիստական էկոնոմիկայի տնտեսական-կազմակերպչական կառուցման իրականացումը, բազմամիլիոնանոց աշխատավորական զանգվածների կուլտուրայի, գիտակցականության ու*

ների, այլև մասսայական հասարակական կազմակերպությունների՝ արհմիությունների, կոոպերացիայի, կոմերիտմիության, ստեղծագործական միությունների, բնակչության հասարակական ինքնագործունեության զանազան մարմինների ճյուղավորված ցանցի միջոցով։

Բանվոր դասակարգի, գյուղացիության, ինտելիգենցիայի, մեր հասարակության բոլոր խավերի ու խմբերի արմատական շահերի համընկնումը, նրանց կամքի միավորումը սոցիալական տարբեր ընդհանրությունների շահերի ու կամքի պարզ գումարը չեն։ Խոսքն իրենց սոցիալական էությամբ միասնական խավերի ու խմբերի՝ որպես ընդհանուր տնտեսական, սոցիալական և գաղափարական հիմքի վրա գոյություն ունեցող ու զարգացող սոցիալիստական տիպի ընդհանրությունների շահերի ու դրանց ծնունդը հանդիսացող կամքի մասին է։ Ներքուստ միասնական այդպիսի սոցիալական ընդհանրություններ և արմատական շահերի այդպիսի միասնություն չի եղել և չի կարող լինել բուրժուական հասարակարգում, որը բզկտվում է իրենց սոցիալական էությամբ հակադիր, հիմնական դասակարգերի անտագոնիստական հակասություններով։ Ոչ պակաս կարևոր նշանակություն ունի նաև այն փաստը, որ սոցիալիստական տիպի բոլոր խավերի ու խմբերի արմատական շահերի մերձեցումը տեղի է ունենում բանվոր դասակարգի տևական, հեռանկարային շահերի հիմքի վրա։

Բանվոր դասակարգի առաջատար դերը սովետական հասարակարգում, հասարակության սոցիալական կառուցվածքի զարգացման մեջ տեղի ունեցող նոր պրոցեսները, համաժողովրդական պետության սոցիալական բազայի հետագա ընդլայնումն ու ամրապնդումը որոշվում են ամենից առաջ սոցիալիզմի օբյեկտիվ պայմաններով, կոմունիստական ֆորմացիայի կազմավորման ընդհանուր օրինաչափություններով։ Այդ օրինաչափությունների հաշվառումը, դրանց խելացի ու նպատակասլաց օգտագործումը հսկայական ու հաճախ չափով պայմանավորված են սուբյեկտիվ գործոնով, աշխատավորների կազմակերպվածությամբ, գիտակցականությամբ, նրանց ստեղծած կազմակերպությունների գործունեությամբ։

Սովետական պետությունը նյութական հիմք է ստեղծում, որպեսզի աշխատավորները փաստականորեն օգտվեն այն դեմոկրատական ինստիտուտների ողջ սիստեմից, որոնց օգնությամբ, խիստ դեմոկրատական սկզբունքների հիման վրա արտահայտվեն նրանց շահերը, մշակվեն ընդհանուր որոշումներ և կոփվի սովետական ժողովրդի ընդհանուր կամքը։ Հարստանում են դեմոկրատական ինստիտուտների աշխատանքի բովանդակությունն ու ձևերը։ Դրանք նպաստում են աշխատավորների ընդհանուր շահերի ու կամքի ձևավորմանը, արտահայտվում սովետական պետության ներկայացուցչական մարմինների ընտրությունների ընտրական կամպանիաների ընթացքում, աշխատավորների դեպուտատների սովետների սեսիաներում, բանվորների, կոլտնտեսականների ժողովներում, կարևորագույն օրինագծերի համաժողովրդական քննարկման ժամանակ, մամուլի և մասսայական ինֆորմացիայի ուրիշ միջոցների օգնությամբ։

Այս ողջ բարդ պրոցեսը ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը՝ որպես բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների քաղաքական կազմակերպության բարձրագույն ձև։ Ամփոփելով անցած հնգամյակում կուսակցության ծավալած գործունեության արդյունքները, ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում ասաց. «Նա ըստ արժանվույն է կատարում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների, ամբողջ ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը։ Վերստին դրսևորվեցին կուսակցության գիտական կանխատեսման ուժն ու քաղաքականության ռեալիզմը, մասսաների եռանդը կոմունիստական շինարարության խնդիրների լուծմանը նպատակամղելու նրա ունակությունը»։

Հենվելով սովետական հասարակության կյանքի բոլոր ոլորտներում ձեռք բերված արդյունքների վրա, ՍՄԿԿ XXV համագումարը սահմանեց բանվոր դասակարգի և ողջ սովետական ժողովրդի արմատական շահերն արտացոլող տասներորդ հնգամյակի նպատակները, խնդիրները։ Լենինյան այդ կուրսին



Լրիվ համապատասխան՝ ՍՍՀՄ Գերագույն սովետն ընդունեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության օրենքը «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1976—1980 թվականների պետական պլանի մասին»։

ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թվական) պլենումի որոշումները, պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառի դրույթներն ու հետևությունները բանվոր դասակարգն ու բոլոր աշխատավորներն ընդունել են որպես կոմունիստական շինարարության արդի փուլի խնդիրների իրականացման ասպարեզում իրենց ողջ գործունեության մարտական ծրագիր։

Արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատավորներն ակտիվ պայքար են ծավալել տասներորդ հնգամյակը՝ արդյունավետության և որակի հնգամյակը, կատարելու համար։

Տնտեսական ու սոցիալական պրոգրեսի հզոր լծակ է սոցիալիստական մրցությունը։ Տարեցտարի այն հարստանում է նորանոր փորձով, հեռանկարային հայրենասիրական նախաձեռնություններով, կատարելագործվում են դրա կազմակերպական ձևերը։ Ի նշանավորումն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի, շեշտվում է «Արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը բարձրացնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման մեջ, Մոսկվայի, Լենինգրադի և մյուս քաղաքների առաջավոր բանվորներն ու կոլեկտիվներն արտադրության ռեզերվների, գիտության ու տեխնիկայի նվաճումների, առաջավոր փորձի ավելի լրիվ օգտագործման նպատակով ստանձնում են սոցիալիստական բարձր պարտավորություններ, հանդիպական պլաններ։ Զգալիորեն գերազանցել հոբելյանական տարվա առաջադրանքները, հուսալի երաշխիք ստեղծել ողջ հնգամյակի հաջող կատարման համար— այս վեհ նպատակով են տոգորված կոմունիզմի միլիոնավոր ու միլիոնավոր կառուցողներ։

«Политическое самообразование», № 2, 1977 г.

բռնում էր, բայց չէր գտնում, «ամպում էր, բայց չէր անձրևում», այսուհանդերձ, մնում էր անդրդվելի. «Ես չհուսահատվեցի, այլ ինքս ինձ ճավաքեցի...»:

Հայ տարեգրության մեջ XIX դարի երկրորդ կեսը ազգային զարթոնքի շրջան էր: Անցյալ դարի վերջին, XX-ի սկզբներին ծնվում էին հայ ժողովրդի գրական գոհարները՝ հրաշալի պոեզիան, արձակը, դրամատուրգիան՝ խարսխված ժողովրդի գեղարվեստական մտածողության, ժողովրդական բանավոր ստեղծագործության պոետիկայի վրա՝ սնելով մի կողմից ռոմանտիզմը, մյուս կողմից՝ ռեալիզմը. մի կողմից՝ Աբովյան, Դուրյան, Պատկանյան, Րաֆֆի, Մուրացան, մյուս կողմից՝ Սունդուկյան, Պարոնյան, Շիրվանզադե, Թումանյան, Իսահակյան. սահմանվում են արվեստի նոր ու բարձր չափանիշներ:

«Դեպի ժողովո՛ւրդը, դեպի բնությո՛ւնը, հայոց գրողներ»,— հնչում էր Թումանյանի բևավոր խոսքը: Դեմիրճյանը ապրում, ստեղծագործում էր, անա, գրական այդ մթնոլորտում, հիանալի հասկանում գրական-պատմական այդ նշանակալից իրողությունները. «Նորագույն պոեզիան,— ասում էր նա,— միտում էր դեպի ժողովուրդը... Ժողովրդական երգը օդի մեջ էր»:

Դյութված *Երգեր ու վերքեր* (1897) բանաստեղծությունների առաջին գրքով, 21 տարեկան Դեմիրճյանն իր մի նամակում (1898) հիացմունքով գրում էր Իսահակյանին. «Ասա, էտպես շատ սաս, շտապիր. էն լավերը, որ խոստացել ես, տպիր. էս հատորը հետս ման ածելով մաշել ու ֆրֆրել եմ. միակ մխիթարանքս: Էդ դաշտերից չհեռանաս... էն հով-ծովը միայն ժողովրդի սիրտըն է... *Ուրիշ ճամփա չկա...*»:

Արդարև, տիրապետողը ինքնագիտակցության ճկող, զարթոնք ապրող ժողովրդական հոծ զանգվածներն էին, ժողովուրդը իր ինքնակամ հզոր ուժով:

Իսկ՝ Դեմիրճյանը, նույնպես, իր բովանդակ էությամբ, ձգտում էր դեպի ժողովուրդն ու ժողովրդականը, բայց գեղագիտական-փիլիսոփայական այլ ուղիներով, որոնումների ու մոլորությունների դժվարին ուղիներով:

Ժամանակաշրջանը ներքվում էր, ներքվում էր նաև «Վերնատունը». հայ գրականության մեջ թափանցում էին այլ խոհեր ու տրամադրություններ: Համաշխարհային, ինչպես և ռուսական գրականության մեջ 90-ական, 900-ական թվականներին ծավալվող դեկադենտական հայացքները, 1896-ի, 1905-ի հայկական ջարդերը, ռուսական առաջին հեղափոխությանը հաջորդած ռեակցիան, բնականորեն, գրական մթնոլորտը լցնում էին անկումային տրամադրությամբ:

«Աղայանը դադարել էր գրելուց,— ասում էր Դեմիրճյանը.— Ավ. Իսահակյանը հետզհետե բողնում էր ժողովրդական լեզուն ժողովրդական նյութի հետ՝ անցնելով իր «մարգարեական», նիցշեական նյութերին, Շանթը արդեն իսկ հեռու էր որևէ ժողովրդայնությունից, ինչպես և ես, որ ժողովրդայնությունը չէի հասկանում միայն թեմատիկայի և լեզվի արտաքին նշաններում» (Դ. Դեմիրճյան, *Թումանյանի հետ*, Ե., 1969, էջ 20):

Անհրաժեշտ էր գրական հին ու նոր սերնդի «հակամարտությունը»: «Նա (Աղայանը) կարծում է,— նկատել է Թումանյանը՝ լսելով Աղայանի և Դեմիրճյանի սուր բանավեճը,— թե աշխարհքն էլի էն է»: Աղայանը դատապարտում էր Դեմիրճյանի հանդգնությունը՝ «կայծակ և շանթ» թափելով նրա գլխին. «Կարծես ես կարող էի,— ասում է Դեմիրճյանը,— վտանգել նրա ամբողջ գրական գործունեությունը...»:

Ժամանակաշրջանն իրենն էր պահանջում: Դեմիրճյանի *Կյանքի տեսիլը* պոեմը («Մուրճ», 1904, № 1) հենց այդ բանավեճի դրսևորումն էր, երիտասարդ բանաստեղծի ծանր զգացումների ու մտորումների հարազատ ծնունդը: Պոեմի հերոս Անբարը տառապում է միստիկական մռայլ խոհերով— կյանքը *դժոխք* է, աշխարհն ու բնությունը՝ *անմեկնելի*, որպես «ամենակարողի ստեղծագործություն»: Այստեղից էլ՝ փախուստ կյանքից, կյանքի հանդեպ անտարբերություն. բնության ոգին նրան ձգում է դեպի հեռուները, հավիտենական-հավերժականը:

Ե՛կ այստեղ, խորհի՛ր, երազի՛ր, ապրի՛ր,
Մահին ու կյանքին *անտարբեր ու գիր*... (Ե. Ժ., հ. 1, 1976, էջ 293):

Անբարը, այդուհանդերձ, հզոր ուժով և անկասելի (այդ արդեն պոեմի նոր՝ *Անթար* տարբերակում, 1908) ձգտում է թափանցել կյանքի, տիեզերքի գաղտնիքները:

*Ինձ ո՞վ կտանի դեպի Տիեզերք,*
*Ո՞վ կտա կյանքի գաղտնիքն ու վայելք:*

«Մի ամբողջ փիլիսոփայական շենք,— պոեմի մասին գրում էր Իսահակյանը...,— մարդու հավերժական տենչանքը երջանիկ լինելու և ըմբռնելու կյանքի և տիեզերքի իմաստը»:

ԿՐԿԻՆ ՓՈԽՎՈՒՄ ԵՆ իրադարձությունները, փոխվում է նաև Դեմիրճյանի միստիկական-փիլիսոփայական մտորումների ու զգացումների ընթացքը: Առաջին համաշխարհային պատերազմի արյունալի իրադարձությունները, արևմտյան Հայաստանի ողբերգական կորուստը ցնցում են գրողին, և նրա առաջ հառնում է կյանքը՝ իր դաժան կոնկրետությամբ ու մերկությամբ:

Հոգեկան տագնապալից ապրումների, իրականության գեղարվեստական խոր արտացոլումներ են գրողի՝ 1916-ին կերտած երկու նշանակալից գործերը,— *Ավելորդը* պատմվածքը, *Դատաստան* թատերգությունը՝ թեմատիկ-գաղափարական նոր բովանդակությամբ, այն մարմնավորող ռեալիստական արվեստով. վերացական պատկերներն ու կերպարները վերածվում են իրական պատկերների ու կերպարների, մարդկային *վերսոցիալական* հարաբերությունները՝ սոցիալական, դասակարգային սուր հարաբերությունների:

Դեմիրճյան-գեղագետը բանձր պատկերներով ու գույներով է ներկայացնում բուրժուական հասարակական միջավայրը, կերտում միջավայրին հարազատ Հաջի աղայի կենդանի կերպարը: Մասնավոր սեփականության անսանձ տենչը Հաջի աղային մղում է ծայրահեղ եսապաշտության— գաղթի ժամանակ անդամալույծ քրոջը թողնում է բուրքական յաթաղանի տակ, նրա փոխարեն սահնակի վրա տեղավորում «թանկարժեք» իրերը, իր գերադասելով մարդ-քրոջից, քրոջը համարելով ավելորդ:

Այստեղ փայլատակում է Դեմիրճյանի զորեղ գրիչը, հաղթանակում է խստաշունչ ռեալիզմը:

*Ավելորդը* պատմվածքը, սակայն, ինչ-որ տեղ տառապում է գրական «մանկական հիվանդությամբ». նրա հիմքում *«Մարդը մարդուն չպետք է դատի»* բարոյական սկզբունքն է, մարդու ինքնակատարելագործման տոլստոյական սկզբունքը:

Որքան ճշմարտացի, զորեղ ու համոզիչ է պատմվածքի առաջին մասը, որտեղ պատկերվում են բուն իրականությունը, բուրժուական անմարդկային հարաբերությունները, նույնքան անհամոզիչ, բույլ և մտացածին է երկրորդ մասը, երբ հեղինակը փորձում է ներկայացնել հերոսի բարոյական «վերածնունդը»՝ նույն միջավայրում:

Վերադառնալով գաղթից, իմանալով քրոջ բուպանության մասին, Հաջի աղան ապրում է հոգեկան «խորին ու մշտական խոռվք», ունեցվածքը բաժանում աղքատներին և մեռնում, որպես մի ջերմեռանդ հավատացյալ:

Նույն կերպ է վարվում Դեմիրճյանը նաև *Դատաստան* թատերգության իր հերոսի՝ դատավոր Թոմասի հետ, առնելով նրան բարոյական հարվածի տակ: Մերժելով նկարիչ-բանաստեղծ Նաղաշի սերը, ինչը մարդկային է ու բնական, դատավորը քարկոծում է նրան, ինքն էլ, սակայն, քարկոծվելով ժողովրդի կողմից:

Այսպես, ուրեմն, *Ավելորդը* պատմվածքում, *Դատաստան* թատերգության մեջ որքան ուժեղ է կյանքն արտացոլող Դեմիրճյան-արվեստագետը, նույնքան բույլ չարիքների դեմ մարտնչող Դեմիրճյան-բարոյախոսը՝ կյանքի վերափոխման բանալին համարելով մարդու ինքնակատարելագործումը մասնավոր սեփականատիրական աշխարհում:

Տակավին ձևավորված չէին Դեմիրճյան-ստեղծագործողի ամբողջական հայացքը, գեղագիտական բարձրագույն իդեալը՝ *սոցիալիստական իդեալը*:

Եվս մի քայլ, և տեղի կունենար ստեղծագործական հրաշքը: Պետք էր հավատալ Դեմիրճյան-գրողի նույն 1916-ի ինքնահավաստիացումներին, ինքնաքննադատական-գուշակումներին:

*Մե՜ծ է իմ ոգին, բարձրաբերձ ոգին.*
*Ահա նա աստծու շնչին է հասնում,*
*Նրա վերամբարձ գագաթի տակին*
*Ձեր քարավանն անցնում և ինձ չի հասնում:*
(Ե. Ժ., հ. 6, 1958, էջ 41):

2.

ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ստեղծագործական հրաշքը տեղի ունեցավ Հոկտեմբերի մատույցներում:

Եվ ո՛չ միայն նրա: 1917—1920 թվականներին *արմատապես* փոխվեց հայ գրականության զարգացման ողջ ընթացքը— *կազմավորվեց* սովետական հայ գրականությունը՝ հեղափոխական-սոցիալիստական բովանդակությամբ:

«Սովետական իշխանության գաղափարի ընկալումը,— ասում էր Դեմիրճյանը,— իմ մեջ եղավ 1919—1920 թվականներին... Գիտակցում էի, որ ժամանակն է անցնել իդեոլոգիական *գիտակից* ստեղծագործության, գրվել *պրոլետարիատի* շարքերը, գրել նրա համար»:

1917—1921 թվականներին հոշոտվում, ոչնչանում էր Հայաստան-երկիրը, հայ ժողովրդի ցասման ալիքը հասնում իր բարձրակետին՝ ամայացնող պատերազմների, բուրքական սանձարձակ բռնությունների, ցեղասպանության, բախտախնդիր դաշնակների վտանգավոր գործողությունների դեմ:

Հակադրվելով ինքնաբավ արվեստի վերամբարձ կանչերին, «հայ ցեղի», «հայ եռագույնի» դաշնակ-ներբող-աղաղակներին, հայ ժողովուրդը, հայ առաջադեմ մտավորականներն ու արվեստագետները իրենց ողջ կեցությամբ, ուժերի գերագույն լարումով, կենաց և մահու պայքար էին մղում հոկտեմբերյան նվաճումների պաշտպանության համար, իրենց գոյության ու ազատության, Հայաստանում սովետական կարգերի հաստատման, ազգային մշակույթի վերածնության համար:

Դեմիրճյանը գնում էր այդ ճանապարհով: «Ժողովրդին լուսավորելու համար, հասարակությունը կազմակերպելու, *ազգը ազատագրելու* անհրաժեշտ պահանջները,— գրում էր նա 1919-ին,— մեր հեղինակներին դարձրին քարոզիչներ, ռահվիրաներ, հրապարակախոսներ, և նրանց գրական ուղղությունը դարձավ ավելի կամ պակաս չափով տենդենցիոզ» և ապա՝ «դեպի հա-

Հասկանալի է, թե պատմականորեն որպիսի կենսական արժեք կարող էր ներկայացնել գեղարվեստական այդ երկը, որի թեման ներկայացնում էր մի՝ թեկուզ և փոքր ժողովրդի կենաց ու մահու ճակատամարտը՝ պարսկական նվաճողական հորդաների դեմ: «Հայ ժողովրդի ծանրակշիռ պատմությունը նրա վրա դրեց մեծ, համամարդկային պարտականություններ,— խոր զգացումով գրել է Դեմիրճյանը:— Ներկա օրերի պատմությունը իր ռևոլյուցիայով, սոցիալիզմով և կոմունիզմի պայքարով հայ ժողովրդից պահանջեց լինել իր պատմական կոչման վրա և կանգնել առաջինների շարքում մարդկության ազատագրության կռվում»:

*Վարդանանքը* Դեմիրճյանի գրական աննախընթաց սխրանքը եղավ. եղավ ստեղծագործական մեծ կուտակումների, խտացումների ու շիկացումների «հանկարծակի» ժայթքում:

Վեպի հենքը բացառապես պատմականն է, պատմական մեծ իրադարձությունները V դարում, երբ գոյության բախտորոշ ճակատամարտ էր մղվում պարսկական նվաճողների դեմ, երբ փորձարկվում էր «հայ ժողովրդի ողջ էությունը,— ինչպես գրում է Դեմիրճյանը,— բարոյական բարձրությունը և ազնվությունը, անձնվիրությունը, հայրենասիրության ուժը»:

Հակադրվելով դիմադրական ուժերին՝ վասակներին, Վարդանն ընտրել էր պայքարի ազնիվ ու շիտակ ուղի՝ մերժելով դիվանագիտությունը, հնազանդությունը, հպատակությունը: Նրա հետ էր ողջ ժողովուրդը, նրա հետ էին հասարակական առաջավոր ուժերը, նրան էր պաշտպանում մեծ Խորենացին: «Ստրկության ուղիներո՞վ ես ազգը տանում ոգեկան ազատության և պետության,— նա խիստ քննադատում էր Վասակի դիվանագիտական ուղին:— Ազատության ոչնչացմա՞մբ ազգություն... Եվ սրանի՞ց ես ակնկալում այդ շնորհը... Ունա՞յն է հույսդ և իզո՞ւր ջանքդ...»:

Եղիշեի՝ իր ժողովրդին ուղղված սրբազան պատգամներն են *Վարդանանքի* հիմքը: «Նման սերմին եղեք, որ մահ ընդունեց և ծաղիկ եկավ... Ծառացեք անձերդ մեջ, որ հարազատանաք հասարակի մեջ: Ազատության զինվորեցեք, ազատվեցեք ձեր անձից, թուլությունից, կրքից, ընչաքաղցից, անձնամոլությունից, ազատվեցեք բռնավորից, հոգեսպանից, ազատասպանից...» (*Վարդանանք*, Ե., 1954, էջ 375):

Եվ ո՛չ միայն *Վարդանանքի*, Դեմիրճյանի ողջ ստեղծագործության ոգին էր դա. «Ազատվեցեք ձեր անձից... ընչաքաղցից, անձնամոլությունից, ազատվեցեք բռնավորից, հոգեսպանից, ազատասպանից...»: Վեպում այդ ամենն ստացել է գեղագիտական-փիլիսոփայական, սոցիալ-քաղաքական հայացքների գեղարվեստական լուծում. *Վարդանանքը* մարդու, հայրենիքի, գոյի, գեղեցկության, ազատության, ընդհանրապես ժողովրդի, անհատի կեցության ու ու ազատության հիմն է: Դա ժողովրդի գեղարվեստական մտածողության, ժողովրդական պատմահայեցողության, կենսափիլիսոփայության, մարդու նվիրական զգացմունքների, վեհ մտորումների, իսկական հայրենասիրության, մարդու մարդկայնացման, հոգու ազնիվ պոռթկումների, տառապած ու ներշնչված ոգու բարձրահունչ ռիթմերի հզոր սիմֆոնիա: «Մենք ոգի ունենք և միտք, մենք ազգ ենք: Կկործանե՞նք մենք: Ո՛չ,— հնչում է Դեմիրճյանի հերոսներից մեկի՝ Առտակի հաստատակամ ձայնը:— Մենք կհաղթենք.. կանք և պիտի մնանք հավիտյա՛նս հավիտենից»:

Մեծ է Դ. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ստեղծագործական վաստակը՝ գեղարվեստական, գեղագիտական-փիլիսոփայական վաստակը, որն արդեն խոր արմատներ է ձգել հայ հինավուրց գրականության մեջ, դարձել հայ մշակույթի, ազգային հոգևոր ժառանգության մնայուն արժեքներից մեկը:

Դերենիկ Դեմիրճյանը քաղաքացի գրող է՝ բառի համապարփակ իմաստով: Բեմահարթակներից, պարբերական մամուլի էջերից, գրողների տան ու համագումարների ամբիոնից հնչող նրա ծանրակշիռ, գրավոր ու բանավոր խոսքը՝ տոգորված իմաստությամբ, կրքոտությամբ, հայրենասիրական կենաշունչ զգացմունքներով ու խոհերով, սրամտությամբ՝ հրավառում էին մարդկանց, վիթխարի ազդեցություն թողնում աշխատավորական լայն զանգվածների վրա, կազմակերպում հասարակական-գրական-ստեղծագործական միտքը, դառնում սոցիալիստական գրականությանը, արվեստին ուղղություն տվող ուժ:

Դերենիկ Դեմիրճյանի սիրո և ատելության արվեստը՝ ինքնատիպ ու անփոխարինելի արվեստը, նվիրական ավանդ է ներկա և գալիք սերունդների համար: Դեմիրճյանի «յուրաքանչյուր նախադասություն,— խորին հարգանքով ու ակնածությամբ հատկանշել է Եղիշե Չարենցը,— մի ինքնուրույն կորող է և անօրինակ մեր գրականության մեջ»:

**ՀՈՎՀ. ՂԱԶԱՐՅԱՆ**

# ՄԱՐԴԸ ԵՎ ԲՆՈՒԹՅՈՒՆԸ

## ԱՆՏԱՌԸ ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՐԻՔ Է

**Ի. Ա. ԴԱՆԻԵԼՅԱՆ**
ՀՍՍՀ Մինիստրների սովետի անտառային տնտեսության
պետական կոմիտեի գլխավոր անտառապետ

*ՀԱՄԱԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՔՆՆԱՐԿՄԱՆ դրված ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների անտառային օրենսդրության հիմունքների նախագիծը շատ կարևոր նշանակություն ունի ՍՍՀՄ անտառային ֆոնդի՝ համաժողովրդական այդ մեծ հարստության պահպանության, ռացիոնալ օգտագործման, ինչպես նաև վերարտադրության գործում: Դա անտառային ռեսուրսների պահպանության օրենսդրական ամրապնդումն է, որը բխում է ՍՄԿԿ XXV համագումարի պահանջներից:*

*ՍՍՀՄ-ը իր անտառային հարստությամբ աշխարհում գրավում է առաջին տեղը: Անտառանյութի պաշարները մեր երկրում կազմում են 81 միլիարդ խմ կամ համաշխարհային պաշարների 24 տոկոսը:*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո ինչպես անտառները, այնպես էլ բնական մյուս հարստությունները ազգայնացվեցին և դարձան համաժողովրդական սեփականություն: Անտառային տնտեսության վարման գործը օրենսդրական ձևակերպում ստացավ ՌՍՖՍՀ-ի Կենտգործկոմի 1918 թ. մայիսին ընդունած Անտառների մասին դեկրետով: Նման դեկրետներ հետագայում ընդունեցին միութենական մյուս հանրապետությունների կենտգործկոմները ևս:*

*Վ. Ի. Լենինը մեծ նշանակություն էր տալիս անտառային հարստությունների ճիշտ օգտագործմանը: Նա սովետական պետության խնդիրն էր համարում ո՛չ միայն պահպանել և վերականգնել անտառները, այլև այդ հարստությունները ծառայեցնել ժողովրդի բարեկեցությանը: Լենինյան այդ դրույթներն արտացոլված են համաժողովրդական քննարկման դրված անտառային օրենսդրության հիմունքներում:*

*Հիմունքներում ասված է. «Սովետական անտառային օրենսդրությունը կոչված է ակտիվորեն նպաստելու անտառների գիտականորեն հիմնավորված, կոմպլեքսային օգտագործմանը, դրանց պլանաչափ վերարտադրմանը և արդյունավետ պահպանմանը՝ ի շահ ներկա և գալիք սերունդների, սովետական մարդկանց դաստիարակելու անտառի՝ որպես մեր հայրենիքի բնական հարստությունների կարևոր բաղկացուցիչ մասի նկատմամբ հոգատար, սրտացավ վերաբերմունքի համար բարձր պատասխանատվության ոգով»: Սովետական իշխանության օրոք անտառային տնտեսությունը վերածվել է սոցիալիստական էկոնոմիկայի կարևոր ճյուղերից մեկի: Անտառները ո՛չ միայն նպաստում են էկոնոմիկայի զարգացմանը, այլև կատարում են հողապաշտպան, ջրապաշտպան, սանիտարահիգիենիկ և կլիմայակարգավորիչ մեծ դեր:*

ՀՍՍՀ-ի անտառները, որոնք կազմում են նրա տերիտորիայի 10 տոկոսը, հողապաշտպան, ջրապաշտպան և կլիմայակարգավորիչ խոշոր նշանակություն ունեն: Հանրապետությունում անտառային զանգվածները ծայրահեղ անհավասարաչափ են տեղաբաշխված. արևմտյան և հարավ-արևմտյան մասերն անտառազուրկ են, իսկ կենտրոնական մասում անտառայնությունը կազմում է ընդամենը 2 տոկոս: Անտառները գլխավորապես տարածված են Հայաստանի հյուսիս-արևելքում և Զանգեզուրի հարավում:

Նկատի ունենալով, որ անտառները մեծ դեր են խաղում էկոնոմիկայի զարգացման, շրջակա միջավայրի բարելավման և ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում, մեր հանրապետությունում վերջին ժամանակաշրջանում որոշակի աշխատանքներ են կատարվել անտառների ռացիոնալ օգտագործման, նրանց պահպանության, վերականգնման ու բուծման, արդյունավետության բարձրացման նպատակով:

Մեր անտառային ֆոնդում տեսակարար մեծ կշիռ ունեն քիչ արտադրողական, սակավարժեք տնկարկները: Հանրապետության ամբողջ անտառների միջին բոնիտետը կազմում է 3,2, միջին խտությունը՝ 0,52:

Անտառային տնտեսության պետական կոմիտեի ենթակայությանը պատկանող ֆոնդի ընդհանուր տարածությունը կազմում է 404,5 հազար հեկտար, այդ թվում անտառածածկ տարածությունը՝ 266,7 հազար հեկտար: Կաղնու գերակշռությամբ անտառամասերը զբաղեցնում են ընդհանուր տարածության 35 տոկոսը, հաճարենու գերակշռությամբ՝ 32, բոխիի՝ 18 տոկոսը: Մնացած մասում տարածվում են գիհու, ղաժենու, սոճու, կեչու, թխկենու, հացենու, թեղու, ընկուզենու և վայրի պտղատու ծառերի խառն անտառներ: Հայաստանում աճում են այնպիսի արժեքավոր ծառատեսակներ, ինչպիսին են հատապտղավոր կենին, արջատխլենին, մատնաձև չինարին և այլն:

Պետանտառկոմիտեի տնօրինության տակ գտնվող անտառներից բացի հանրապետությունում կան նաև 41,7 հազար հեկտար կոլտնտեսային և սովխոզային անտառներ: Դրանք մատղաշ, ցանցառ տնկեր ու մացառուտներ են:

Սոցիալիստական շինարարության տարիներին մեր հանրապետությունում լայն գործունեություն է ծավալվել անտառների գույքագրման ասպարեզում: Բոլոր անտառները, որպես հատուկ պաշտպանական նշանակություն ունեցողներ, դասվել են առաջին խմբում: Արգելվել են համատարած հատումները, հաստատվել են անտառահատման այնպիսի եղանակներ, որոնք մեծապես նպաստում են անտառների աճին: Կազմակերպվել են Դիլիջանի, Խոսրովի և Շիկահողի արգելանոցները, որոնք ունեն շուրջ 56,1 հազար հեկտար տարածություն, արգելավայրեր են հայտարարվել հատուկ պաշտպանական անտառները, կեչին, գիհին, կաղնին, վայրի պտղատու ծառերը, ինչպես նաև՝ չինարին, արջատխլենին:

Հանրապետության փոքրիշատե մեծ գետերի ափերին մեկ կիլոմետր խորությամբ արգելվել են անտառահատումները, բացի սանիտարական և խնամքի նպատակով կատարվող հատումներից: Ընդհանրապես, անտառների 95 տոկոսում արգելված է պիտանի և առողջ ծառերի հատումը:

Հաշվի առնելով, որ անտառապատումն ու ծառապատումը մեծ նշանակություն ունեն բնակչության պահանջմունքների բավարարման, ինչպես նաև կլիմայակարգավորման, առողջապահական ու սանիտարա-հիգիենիկ պայմանների ստեղծման ասպարեզում, հանրապետության անտառտնտեսությունների մարմինները և տեղական սովետները ջանում են բուսապատել քաղաքների և բանվորական ավանների մերձակա անտառազուրկ տարածությունները:

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում անտառամելիորացիային, անտառվերականգնմանն ու կանաչապատմանը: Երևանի խիստ ցամաքային կլիման մեղմացնելու, սանիտարա-հիգիենիկ լավագույն պայմաններ ստեղծելու և հողատարման երևույթների դեմ պայքարելու նպատակով կառավարության որոշումներով քաղաքի շրջակայքում անտառային տնտեսությանն է հատկացվել մոտ 20.000 հեկտար հողատարածություն: Կիսանապատային վայրերում, անտառի աճեցման համար դժվար պայմաններում, հիմնադրվել են անտառապու-



րակային կանաչ օղակներ, ոռոգելի պտղատու այգիներ, իսկ չոռոգվող հողատարածություններում կատարվել են վայրի պտղատու ծառերի և թփերի անտառատնկումներ: Սևանա լճի ջրերից ազատված հողերի յուրացման նպատակով նրա ավազանում անտառամելիորատիվ մեծ աշխատանքներ են կատարվել: Յուրացվել է 16 հազար հեկտար հողատարածություն, ընդ որում, սոճին հիմնական ծառատեսակ է դարձել և գրավում է անտառային կուլտուրաների համար նախատեսված ընդհանուր տարածության 35 տոկոսը: Ավարտվում են ոչ երկարակյաց ուռենու և բարդենու տնկարկների վերակառուցման, դրանք ավելի երկարակյաց տեսակներով փոխարինելու աշխատանքները: Այդ գործում զգալի է ՀՍՍՀ ԳԱ բուսաբանության ինստիտուտի օգնությունը:

Հողմային էրոզիան մեծ վնաս է հասցնում Լոռու բարձրահարթի գյուղատնտեսությանը: Դրա դեմ պայքարելու համար Կալինինոյի շրջանում հիմնարկվել է 40 կմ երկարությամբ պետական անտառապաշտպան գոտի, որը նկատելիորեն կմեղմի լեռներից փչող ցուրտ քամիների ազդեցությունը Լոռու այդ տարածքում:

Հանրապետության արդյունաբերական խոշոր կենտրոններից մեկը՝ Լենինականը, միշտ ենթարկվում է հյուսիսային քամիների վնասակար ազդեցությանը: Քաղաքին հարող տարածությունները տասնյակ կիլոմետրերով անտառազուրկ են, որի հետևանքով հողերը ենթակա են էրոզիայի: Լենինականի անտառտնտեսությունը քաղաքի շրջակայքում, Ախուրյանում, Արթիկում, Ղուկասյանի շրջանի Արփալիճ ջրամբարին հարող հողատարածություններում մոտ 2.000 հեկտար պաշտպանական անտառատնկումներ է կատարել: Նման անտառատնկումներ են կատարվել նաև Սպիտակի, Սիսիանի, Եղեգնաձորի և Ազիզբեկովի շրջանների էրոզիայի ենթակա հողերում:

Անտառտնտեսությունները կանաչապատման և անտառվերականգնման մեծ աշխատանքներ են ծավալել Կիրովական, Ստեփանավան քաղաքների, Ջերմուկ, Դիլիջան, Արզնի, Հանքավան առողջարանների շրջակայքում: Մի շարք վայրերում հիմնվել են գեղեցիկ անտառ-պարտեզներ և դենդրարիներ:

Անտառվերականգնման ու հիմնման աշխատանքներն առանձնապես լայն ծավալ են ստացել ՀԿԿ Կենտկոմի և ՀՍՍՀ Մինիստրների սովետի 1967 թ. մայիսի 23-ի՝ «Հողմային և ջրային էրոզիաներից հողի պաշտպանման անհետաձգելի միջոցառումների մասին» որոշումից հետո:

Անտառամելիորատիվ և անտառմշակութային աշխատանքների որակը, անտառատնկումների աճը, դրանց արդյունավետությունը նախ և առաջ պայմանավորված են լավորակ սերմացուով և տեղական ծագում ունեցող տնկանյութերի քանակով: Հաշվի առնելով այդ, այժմ մենք ուրիշ հանրապետություններից տնկանյութ չենք ներմուծում: Ներմուծում ենք միայն այն սերմերը, որոնք չկան մեր հանրապետությունում կամ կան անբավարար քանակությամբ: Տնկանյութի և սերմի նկատմամբ մեր պահանջը սեփական միջոցներից հոգալու նպատակով ՍՍՀՄ Մինիստրների սովետի պետանտառկոմիտեի որոշմամբ մի շարք անտառտնտեսություններում առանձնացվել են անտառսերմային տարածություններ և հիմնվել պլանտացիաներ: Որոշակի աշխատանք է արված նաև անտառտնկարանների ընդլայնման նպատակով: Տնկարանների տարածությունը 1967 թվականի 85 հեկտարի դիմաց այժմ կազմում է 150 հեկտար, իսկ ստանդարտ տնկանյութի ելքը, 1967 թվականի 18 միլիոնի փոխարեն, հասցվել է 42 միլիոն հատի:

Արդյունաբերական կենտրոն հանդիսացող այն քաղաքների և առողջարանների շուրջը, որտեղ հողա-կլիմայական պայմանները թույլ չեն տալիս առանց ոռոգման անտառպաշտպան ծառատնկումներ կատարել, մրգատու այգիներ, անտառապուրակներ, ընկույզի պլանտացիաներ, անտառայգիներ ու կանաչ գոտիներ ստեղծել, կառուցվել և կառուցվում են պոմպակայաններ ու ոռոգիչ սիստեմներ:

Սևանա լճի շուրջը, հատկապես խճաքարային և ցածր բերքատվություն ունեցող հողատարածություններում ստեղծվել են չիչխանի տնկարկներ, որոնք բավարար չափով ամրացնում են լճից ազատված ավազուտները: Բացի այդ,

չիչխանը վիտամինային արդյունաբերության համար թանկարժեք հումք է։ Սևանի ավազանում ստեղծված 1.000 հեկտարից ավելի չիչխանի անկարկները հետագայում կարող են բազա ծառայել չիչխանի յուղի և վիտամինի արտադրության համար։

Հանրապետության լեռնային ռելիեֆի պայմաններում, որտեղ անտառաճեցման պայմանները փոփոխվում են ըստ ուղղահայաց գոտիների, լանջերի թեքության և էքսպոզիցիայի տեսակների ճիշտ ընտրությունը վճռական դեր ունի կայուն անտառատնկումներ կատարելու գործում։

Կառավարության հանձնարարությամբ ՀՍՍՀ ԳԱ բուսաբանության ինստիտուտն անտառաբուծության ասպարեզում կատարված գիտական հետազոտությունների հիման վրա հրատարակել է Հայկական ՍՍՀ–ի անտառապատման և կանաչապատման գիտական հիմունքները կոլեկտիվ աշխատությունը. դա մեծ օգնություն է նախագծողներին ու արտադրողներին՝ ճիշտ կողմնորոշվելու յուրաքանչյուր շրջանում համապատասխան անտառմշակույթներ արմատավորելու, անտառմելիորատիվ միջոցառումներ անցկացնելու գործում։ Անտառաբուծական շրջանայնացում է ստեղծել նաև Հայաստանի գիտահետազոտական անտառափորձակայանը։

Հայաստանի կենտրոնական և մի շարք այլ շրջաններում անտառները դեռևս ցածր ու մատղաշ են։ Այդ հետևանք է այն բանի, որ մինչև սովետական կարգերի հաստատումը Հայաստանի շատ անտառներ համատարած հատվել են։ Դրա հետևանքով նոր աճած մատղաշ ծառերը դեգրադացվել են և կորցրել վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարելու դիմադրողականությունը։ Դրանով է բացատրվում Հրազդանի (Արզական, Աղվերան) և Ապարանի ու Ազիզբեկովի շրջանների անտառտնտեսությունների ծառերի մասսայական վարակվելը վնասատուներով, որոնք հսկայական տարածությունների վրա մերկացնում են անտառը։ Անտառային վնասատուների դեմ այժմ կիրառվում են պայքարի մեխանիկական և քիմիական տարբեր միջոցառումներ։ Հանրապետության լեռնային ռելիեֆը հնարավորություն չի ընձեռում լայնորեն կիրառելու ավիացիոն և վերգետնյա միջոցները, որի հետևանքով անտառներում մնում են վնասատուների բազմացման պոտենցիալ օջախներ։ Իսկ մի շարք վնասատուների ու հիվանդությունների դեմ պայքարի արդյունավետ միջոցներ դեռ չեն մշակվել։ Ժամանակն է, որպեսզի գիտահետազոտական հաստատությունները ստեղծեն ներգործուն քիմիկատներ, սարքեր անտառի հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարելու համար։

Ոչ վաղ անցյալում Հայաստանը հայտնի է եղել իր վայրի կենդանիներով ու թռչուններով։ Ցավոք, հսկողության բացակայության հետևանքով, մասնավորապես՝ որսագողության պատճառով հետզհետե նվազել է դրանց քանակը, իսկ առանձին տեսակներ լրիվին ոչնչացման վտանգի առաջ են կանգնած։ Վերջին ժամանակներս, սակայն, որոշակի գործ է արվում որստնտեսությունը պահպանելու և զարգացնելու նպատակով։ Հանրապետության շրջաններում 880 հազար հեկտար տարածության վրա ավարտվել են որսկազմակերպման աշխատանքները։ Ամեն տարի անցկացվում են բիոտեխնիկական միջոցառումներ, պայքար է տարվում որսագողերի դեմ։ Ցոնդը նվազելու պատճառով խստիվ արգելվել է արդյունաբերական որսը։ Պայմանագրային հիմունքներով որսորդական միությանն է հանձնվել 180 հազար հեկտար որսի հանդավայր՝ տնտեսություններ կազմակերպելու համար։ Կլիմայափոխման նպատակով բերվում և որսահանդերն են բաց թողնվում կենդանական աշխարհի առանձին տեսակներ։

Վերջին տարիներս բերվել են 250 գլուխ բծավոր, 20 գլուխ կովկասյան ազնվացեղ եղջերուներ, 794 գլուխ վայրի խոզ, 240 նապաստակ։

Հանրապետությունում անտառտնտեսության, անտառկուլտուրաների և անտառմելիորատիվ աշխատանքներին մեծ վնաս է հասցնում անտառներն իբրև արոտավայր օգտագործելը։ Չնայած Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի՝ անտառներում անասունների արածեցումն արգելելու մասին որոշումներին, պետանտառֆոնդը մինչ այսօր էլ օգտագործվում է իբրև արոտավայր։ Ավելին, նրա տարածքում կառուցվել են զգալի թվով անասնապահական ֆերմաներ,



իսկ դա նույնպես արգելված է հանրապետության կառավարության որոշմամբ։

«Սոյուզհիպրոլեսխոզ»-ի տվյալներով պետանտառֆոնդի և նրա հարակից շրջանների տարածքում կառուցված անասնապահական ֆերմաների թիվը հասել է 373-ի՝ 569,8 հազար գլուխ ոչխարի համար։ Անտառի այն տարածքը, որը սիստեմատիկ օգտագործվում է որպես արոտավայր, հաշվվում է 93,8 հազար հեկտար, այսինքն՝ հանրապետության ողջ անտառային տարածքի 31 տոկոսը։ Հարկ է ամենավճռական միջոցների դիմել անտառներում անասունների արածեցումը վերջնականապես դադարեցնելու համար։

Անտառը որոշ իմաստով արեգակնային էներգիայի ակումուլյատոր է։ Տերևը «կանաչ ֆաբրիկա է», որն արևի ճառագայթների էներգիան վերածում է փայտի, պտուղների ու սերմերի պոտենցիալ էներգիայի։ Որքան մեծ չափով արևի էներգիան վերածվի պոտենցիալ էներգիայի, այնքան արդյունավետ կլինեն անտառները։ Սաղարթախիտ ծառաստանի տերևների մակերեսը բազմապատիկ անգամ գերազանցում է նրա գրաված բուն տարածությանը։ Օրինակ, կաղնու մեկ հեկտար անտառի բոլոր տերևների ընդհանուր մակերեսը կազմում է վեց հեկտար։

Անտառը քաղաքների և բնակավայրերի սանիտարա-հիգիենիկ ու կուլտուր-էսթետիկական բարեկարգման հզոր միջոց է։ Այն կլանում է ածխաթթու գազը, օդը հարստացնում օրգանիզմի համար անհրաժեշտ թթվածնով։ Ահա թե ինչու, ներկայումս խոշոր քաղաքներ կառուցելիս դրանց շուրջը ստեղծվում են կանաչ գոտիներ։ Հայաստանում արդյունաբերության, քաղաքների և բնակավայրերի բուռն զարգացմանը զուգընթաց դրվել է կանաչ շինարարության և անտառային տարածությունների ավելացման հարցը։

Քաղաքների աճը, արդյունաբերության զարգացումը բացասաբար են անդրադառնում անտառայնության տոկոսի վրա։ Այստեղից էլ մի էական հարց. ի՞նչ տարածություն պետք է զբաղեցնի անտառը, որպեսզի կատարի իր դերը կենսաոլորտում, ինչպիսի՞ն պետք է լինի առավելագույն անտառատարածությունը երկրի այս կամ այն վայրում, մարզում։ Ըստ ակադեմիկոս Ա. Ա. Մոլչանովի՝ առավելագույն անտառատարածություն պետք է համարել մակերեսի այնպիսի չափը, որտեղ տեղադրված ծառերը մյուս բաղադրամասերի հետ աշխատել լրիվ և բազմակողմանի կբավարարեն ժողովրդական տնտեսության պահանջները, կկատարեն ջրապահպան, հողապաշտպան և կլիմայակարգավորիչ դեր, կստեղծեն օգտակար վայրի կենդանիների կյանքի համար բարենպաստ պայմաններ և կնպաստեն գյուղատնտեսության արդյունավետության բարձրացմանը։ Բավական բարդ է որոշել այս կամ այն երկրի անտառայնությունը։ Նման աշխատանք մեր հանրապետությունում չի կատարվել։ Սակայն, օգտվելով ՍՍՀՄ կենտրոնական սևահողային տնտեսական շրջանի ամփոփ տվյալներից, կարելի է ասել, որ անտառը հողապաշտպանի, ջրապահպանի և ջրակարգավորիչի իր դերը կկատարի՝ ընդհանուր տարածության 25—30 տոկոս համահավասար անտառայնության դեպքում։ Կարելի է ասել, որ լեռնային ռելիեֆը հաշվի առնելիս ամենաբարենպաստ անտառայնությունը Հայաստանի համար կկազմի 30—35 տոկոսից ոչ պակաս։ Հարկ է լինում լուծել մեկ հարց ևս. ի՞նչ տարածությունների հաշվին կարելի է ավելացնել անտառայնության տոկոսը։ Այս տեսակետից Հայկական ՍՍՀ-ի հնարավորությունները չափազանց սահմանափակ են։ Բավական է նշել, որ նրա տարածքի 47—51 տոկոսը քարքարոտ է և փաստորեն անօգտագործելի։

Որպեսզի հանրապետության անտառայնությունը բարենպաստ՝ 30 տոկոսի հասցվի, անհրաժեշտ է, մեր կարծիքով, որոշ հողատարածություններ, որոնք գյուղատնտեսության համար այնքան էլ պիտանի չեն, հատկացնել պաշտպանական անտառատնկումներին։ Անտառատնկումներին հատկացվելիք ընդհանուր տարածությունը կարելի է որոշել հողի էրոզիայի դեմ պայքարի կոմպլեքս միջոցառումների տեխնիկական նախագծերը կազմելուց հետո միայն՝ հաշվի առնելով յուրաքանչյուր կոլտնտեսության և սովխոզի տնտեսական ու բնական պայմանները։

Հանրապետության անտառների վիճակը բարելավելու համար պահանջվում

է բավական տևական շրջան: Դրա համար ամենամյա 70 հազար խորանարդ մետր (այդ թվում՝ 10 հազար խմ խնամքի) անտառահատումները, որ նախատեսվում է պլանով, պետք է կատարել նախ և առաջ անտառառողջացման նպատակով:

ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի բուսաբանության և կենդանաբանության ինստիտուտները, ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության բույսերի պաշտպանության ինստիտուտը մշակել են անտառային տնտեսությանը վերաբերող մի շարք միջոցառումներ, որոնք հնարավորություն կընձեռեն հանրապետության անտառային տնտեսությունը վարելու գիտականորեն հիմնավորված մեթոդներով: Սակայն դեռևս կան չլուծված մի շարք խնդիրներ: Հարկ է նշել, որ հանրապետության ոչ մի գիտական հաստատություն մինչև օրս չի զբաղվել անտառային տնտեսության մեքենայացման հարցերով, որի հետևանքով անտառտնտեսական, անտառկուլտուրային, անտառմելիորատիվ աշխատանքների մեքենայացումը խիստ անբավարար է:

Հայտնի է, որ կաղնին, հաճարենին, սերմային ծագում ունեցող բոխին և հանրապետությունում աճող այլ կարծրատերև ծառատեսակներ համարվում են արժեքավոր և մեծ նշանակություն ունեն ժողովրդական տնտեսության համար: Քանի որ հիշյալ ծառատեսակները կազմում են Սովետական Միության անտառային պաշարների ընդամենը 2 տոկոսը, ուստի անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել այդ արժեքավոր ծառատեսակների տնկարկների պահպանության, վերարտադրության և դրանց արտադրողականության բարձրացման հարցերին: Այնուհանդերձ, ընդհուպ մինչև վերջին տարիները, Հայկական ՍՍՀ-ում այդ արժեքավոր, հիմնական անտառկազմող ծառատեսակների արհեստական վերականգնման աշխատանքներին բավարար ուշադրություն չէր հատկացվում: Չեն մշակված մացառային ցածրաբոնիտետը, ցածր արտադրողական կաղնու, կաղնու-բոխենու տնկարկները սերմային բարձր բոնիտետային տնկարկներով փոխարինելու մեթոդներ: Վերջնականապես չեն լուծված հաճարենու տնկարկների արհեստական վերականգնման, ինչպես նաև էրոզիայի ենթարկված հողերում, չորային պայմաններում աճող գիհու արժեքավոր փշատերև ծառատեսակի տնկարկների արհեստական վերականգնման խնդիրները:

Ընդհանուր առմամբ, հավանություն տալով ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների անտառային օրենսդրության հիմունքների նախագծին, կցանկանայինք կարծիք հայտնել առանձին հոդվածների մասին:

Օրենսդրության նախագծի 32-րդ հոդվածում, որը վերաբերում է կուլտուրառողջապահական նպատակներով անտառն օգտագործելուն, մեր կարծիքով, պետք է անել հետևյալ լրացումը. հարկ է, որ աշխատավորների դեպուտատների տեղական սովետների գործկոմները և անտառային տնտեսությունների մարմինները պլանավորեն ու հետևողականորեն ընդարձակեն քաղաքամերձ և ավանամերձ գոտիներում անտառային տարածությունները:

Նախագծի 42-րդ հոդվածում առանձնակի ուշադրություն է նվիրված անտառների վերականգնման ու բուծման, ծառասերմերի մթերման ու տնկանյութերի աճեցման հարցին: Ճիշտ է, այս ասպարեզում մեր հանրապետությունում արդեն որոշակի գործ արված է, բայց, մեր կարծիքով, պետք է ավելի լայն հնարավորություններ ընձեռել՝ անտառային տնտեսությունների տեղական մարմիններին առավել շատ միջոցներ հատկացնելու այդ նպատակին:

Հանրապետությունում բարվոք չէ կոլտնտեսային և սովխոզային անտառների վիճակը: Այդ անտառները մեծ մասամբ հողապաշտպան նշանակություն ունեն: Դրանց մի մասը, ինչպես, օրինակ, Սևանի գիհու անտառները և Ղափանի շրջանի բնական սոսու պուրակը, բնության հազվագյուտ հուշարձաններ են: Սակայն կոլտնտեսային և սովխոզային անտառների զգալի մասը ապօրինի հատումներով, անխղճորեն ոչնչացվում է, իսկ բնական վերականգնումները, հսկողության բացակայության հետևանքով, դառնում են անասնակեր: Որքան էլ տարօրինակ է, այդ անտառները մինչև այժմ նույնիսկ հաշվի չեն առնվել: Չի կազմակերպվում նաև պայքար անտառային վնասատուների դեմ:

Մեր կարծիքով, ՍՍՀՄ և միութենական հանրապետությունների անտառա-



յին օրենսդրության նախագծում պետք է ավելացնել, որ, եթե կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարները չեն զբաղվում իրենց տնտեսություններին պատկանող անտառների խնամքով, ապա նպատակահարմար է դրանք հանձնել անտառային տնտեսությունների պետական մարմինների տնօրինությանը: Ցավոք, աշխատավորների դեպուտատների տեղական սովետների որոշ գործկոմներ նույնպես դեռևս թույլ են վերահսկում անտառային պահպանության օրենսդրության կիրառմանը:

Չնայած անտառների գաղտնի և անօրինական հատումն արգելելու մասին որոշումներին, դեռևս կան անբարեխիղճ մարդիկ, որոնք գաղտնաբար, անխնա հատում են անտառը, նույնիսկ նրա արժեքավոր տեսակները: Իսկ տեղական սովետները երբեմն ներողամիտ են լինում այդ կարգի մարդկանց նկատմամբ: Մեր կարծիքով, հանրապետությունների անտառային պահպանության օրենսդրության նախագիծը մշակելիս հատուկ հոդված պետք է նախատեսել անտառների պահպանության համար տեղական սովետների պատասխանատվության բարձրացման և քաղաքամերձ ու ավանամերձ գոտիներում նոր անտառների տնկմանը մասնակցելու մասին:

Անտառային տնտեսության առջև դրված խնդիրների կատարումն ապահովելու համար պահանջվում է անհրաժեշտ թվով բարձրագույն կրթությամբ անտառագետներ, որպիսիք հանրապետությունում շատ սակավ են: Մեր կարծիքով, անհրաժեշտ է Երևանի գյուղատնտեսական ինստիտուտում բացել անտառային բաժին՝ տարեկան 25—30 շրջանավարտով:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի պետանտառկոմիտեի կազմած՝ 1976—1990 թթ. ՀՍՍՀ անտառային տնտեսության զարգացման գլխավոր հատակագծում մշակված են անտառտնտեսական արտադրության բարելավման, դրա ինտենսիվության բարձրացման, անտառաֆոնդի տարածությունների ավելի արդյունավետ օգտագործման տեխնիկա-տնտեսական միջոցառումներ:

Գլխավոր հատակագծով նախատեսվող միջոցառումների իրականացման շնորհիվ կավելանան կարևոր և ցանկալի ծառատեսակների՝ հաճարենու, սերմնային կաղնու, բոխենու, սոճու, հունական ընկուզենու տարածությունները, որոնք կկազմեն անտառապատ տարածությունների զգալի տոկոսը:

Անտառային տնտեսության առջև ծառացած խնդիրների շուտափույթ լուծումը, մեր կարծիքով, պահանջում է միավորել հանրապետությունում այդ գործով զբաղվող գիտական անջատ-անջատ կազմակերպությունները և ստեղծել անտառային տնտեսության և անտառմելիորացիայի գիտահետազոտական ինստիտուտ՝ համապատասխան գիտափորձարարական բազայով:

Առաջնորդվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, հանրապետության անտառային տնտեսության աշխատողները նախատեսել են տասներորդ հնգամյակում իրականացնել անտառվերականգնման աշխատանքներ 35 հազար հեկտար տարածության վրա, այդ թվում՝ 2,5 հազար հեկտարը կոլտնտեսությունների և սովխոզների՝ էրոզիայի ենթարկված և գյուղատնտեսական օգտագործումից դուրս եկած հողատարածությունների վրա, մթերել 520 տոննա անտառային սերմեր, աճեցնել 204,5 մլն հատ տնկիներ:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի կապակցությամբ Ողջաբերդի լեռնաշղթայի հյուսիս-արևմտյան լանջերում Ջրվեժի անտառտնտեսությունը 200 հեկտար տարածության վրա հիմնում է ժողովրդական անտառայգի: Ոռոգելի ջրով ապահովելուց հետո այդ տարածությունն ավելի կընդարձակվի: Այդ աշխատանքներին մասնակցում են նաև Ստեփանավանի, Գուգարքի, Նոյեմբերյանի, Մարտունու, Նորադուզի, Դիլիջանի և այլ տնտեսությունների կոլեկտիվներ: Նրանք անտառայգում տնկում են իրենց շրջաններում աճող կաղնի, թխկի, կեչի, սրահացի, հացենի, սոճի, տարբեր տեսակների գիհիներ, բոխի, լոռենի, բարդենի և այլ ծառատեսակներ ու թփեր:

Անտառային հարստությունների պահպանությունն ու բազմապատկումը մեր երկրում համաժողովրդական գործ է և, անկասկած, անտառային օրենսդրության ընդունումը նոր ազդակ կհանդիսանա երկրի անտառների՝ համաժողովրդական այդ մեծ հարստության, պահպանման ու արդյունավետ օգտագործման համար:

# ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

## ՋԵՐՄՈՐԵՆ ՍԻՐԵՆՔ ՄԵՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ

**Ա. Ա. ԿԱՐՁՄԻՏ**
Անդրկովկասի կարմրադրոշ սահմանապահ օկրուգի սահմանապահ
զորքերի քաղբաժնի պետի տեղակալ, գնդապետ

*ՉՈՒԿՈՏԿԱՅԻՑ ՄԻՆՉԵՎ ԲԱԼԹԻԿԱ, հյուսիսի սառուցյալ
ծովերից մինչև հարավի տոթակեզ անապատները ձգվում
է սովետական մեր հայրենիքը։ Բազմազան է նրա բնությունը. ընդարձակ
հարթավայրեր ու բարձրաբերձ լեռներ, բերրի տափաստաններ ու անծայրածիր
անտառաստանգվածներ, լայնահուն գետեր ու խորունկ լճեր։ Աշխարհում չկա
մի այլ երկիր, որն իր տարածքով ու բնական հարստություններով համեմատվի
նրա հետ։
Մարդու համար միշտ թանկ ու սիրելի է սեփական աշխատանքով ստեղ-
ծածը։ Իսկ այն ամենը, ինչ կա մեր երկրում— քաղաքներն ու գյուղերը, գոր-
ծարաններն ու ֆաբրիկաները, ցանքատարածություններն ու ծաղկուն այգինե-
րը— ժողովրդի ստեղծածն է, նրա տաղանդի արգասիքը։ Մեր ժողովուրդն ան-
սահմանորեն սիրում է իր երկիրը և հպարտանում համաշխարհային կուլտու-
րայի գանձարանում ներդրած իր ավանդով։
Ռուսաստանի աշխատավորների հայրենասիրության ակունքներն է բա-
ցահայտել Վլադիմիր Իլյիչ Լենինը իր Վելիկոռուսների ազգային հպարտության
մասին հոդվածում. «Խո՞րթ է արդյոք մեզ համար, վելիկոռուսական գիտակից
պրոլետարներիս համար, ազգային հպարտության զգացումը,— գրել է նա։—
Իհարկե, ոչ։ Մենք սիրում ենք մեր լեզուն ու մեր հայրենիքը...»։
Մեր երկրում հաստատված սոցիալիստական կարգերն արմատապես փո-
խեցին ժողովրդի վիճակը, հարստացավ նրա հոգևոր կյանքը, որակապես նոր
բովանդակություն ստացավ հայրենիքի նկատմամբ նրա տածած սերը։
Պատմական հիանալի ուղի է անցել Լենինի հիմնադրած Սովետական Սո-
ցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը շուտով կբոլորի իր 60
տարին։ Ավելի քան հարյուր ազգությունների ազատ ու իրավահավասար մարդ-
կանց հարազատ տունն է այն։ Նրանք հպարտանում են իրենց մեծ հայրենիքով՝
մարդկության պատմության նոր դարագլխի մունետիկով, կոմունիստական
կուսակցության ղեկավարությամբ նոր, իրոք արդար ու ազատ հասարակարգ
կերտող բազում ժողովուրդների անքակտելի դաշինքն ստեղծող միլիոնների ո-
գեշունչ աշխատանքով։
Դժվար է սեղմ տողերում գրել այն անուրանալի նվաճումների մասին, որ
ձեռք է բերել մեր լայնարձակ հայրենիքը՝ մեծ Հոկտեմբերի կենարար գաղա-
փարների իրականացման ճանապարհին։ Դժվար է ոչ թե նրա համար, որ ինչ-որ
տեղ, թերևս, անխուսափելի են կրկնությունները, այլ պարզապես այն պատ-
ճառով, որ նվաճված բարձունքը տակավին ամբողջովին չի արտահայտում*



*մարդ-արարածի գործադրած այն ողջ ջանքն ու եռանդը, հոգեկան կորովն ու
անձնուրացությունը, որոնցով իրականություն դարձան առաջավոր մարդկու-
թյան՝ հազարամյակներով փայփայած սոցիալական արդարության գաղափար-
ները։
Ժամանակակից երիտասարդը ավագ սերնդի սխրանքներին կարող է ծանո-
թանալ բազում ու բազմապիսի տեղեկատու աղբյուրներից, ոգևորվել նրանց
հերոսագործություններով։ Բայց և հաճախ նրա հոգում ծագում է բնականոն մի
հարց. ի՞նչը ստիպեց դարասկզբի երիտասարդությանը գիտակցաբար, սրտի
թելադրանքով մխրճվել հեղափոխական պայքարի բոցերի մեջ և ինքնամոռաց
մաքառումով փոխել հին կյանքի ընթացքը։
Հիրավի, որոշ առումով դժվար է վաթսունամյա հեռավորությունից անմի-
ջականորեն զգալ Հոկտեմբերի սերնդի սրտի թրթիռը, սոցիալական ցասման
ու վայրույթի, առնացող ըմբոստացման ուժն ու հմայքը։ Սակայն մեր օրերի
դասակարգային կռիվները կապիտալի աշխարհում, ազգային-ազատագրական
պայքարը գաղութային լուծը չթոթափած երկրներում, գայլի օրենքի դաժան
գերիշխումը սեփականատիրական հարաբերություններում մղում են մեր պա-
տանիներին ու աղջիկներին՝ մեծի աչքերով նայելու բուրժուական աշխարհի
արատներին և լրջախոհ վերլուծելու այն, ինչը թոթափեցինք մենք Հոկտեմ-
բերյան հեղաբեկման շնորհիվ։
Մենք ուրախ ենք ու հպարտ մեր երիտասարդության համար, որն ակտիվ
մասնակցում է նոր կյանքի հաստատման, հիրավի, աննախադեպ պայքարին,
դառնալով նախորդ սերունդների արժանի շարունակողը։
Կուսակցության XXV համագումարի բարձր ամբիոնից գնահատանքի ջերմ
խոսքեր ասվեցին մեր երիտասարդության, կոմերիտականների հասցեին, ով-
քեր անձնվիրաբար աշխատում են մեր անծայրածիր հայրենիքի բազմաթիվ մեծ
ու փոքր կառույցներում ու ձեռնարկություններում, կոլտնտեսությունների ու
սովխոզների անափ դաշտերում։
Սովետական մարդը հպարտանում է մեր ժողովուրդների միլիոնավոր հե-
րոսներով ու հերոսուհիներով, որոնք ջանք ու կյանք չեն խնայել հանուն այդ
հասումների ծավալված պայքարում։ Հպարտանում են ազատ աշխատանքի
հաջողություններով, գիտության նվաճումներով, կուլտուրայի ծաղկմամբ,
մարդկության համար նորանոր հորիզոններ բացող, բարոյական նոր արժույթ-
ներով ու գաղափարներով հարստացնող սովետական ապրելակերպով։
Սովետական մարդու համազգային հպարտությունը վիթխարի, բովան-
դակալից զգացում է։ Ողջ երկիրն է հպարտանում բոլոր հանրապետություննե-
րի բանվորների ու կոլտնտեսականների աշխատանքային սխրանքներով, մեր
բոլոր հանրապետությունների գիտնականների հայտնագործություններով, նո-
րարարների վարպետությամբ, ժողովրդական արվեստի անմահ ստեղծագոր-
ծություններով, օդաչու-տիեզերագնացների հերոսությամբ, սովետական ժո-
ղովուրդների համերաշխ, մեծ ընտանիքի բոլոր ազգությունների ներկայացու-
ցիչներով։ Այդ ամենը սովետական մարդկանց անչափելի հարստությունն է,
յուրաքանչյուր սովետական քաղաքացու, մեր բազմազգ հայրենիքի բոլոր որ-
դիների ու դուստրերի հպարտության աղբյուրը։
Եվ որքան առաջ ենք ընթանում կոմունիզմի կառուցման ուղիով, որքան
բազմազան և ամուր են դառնում ՍՍՀՄ կազմում միավորված ժողովուրդների
տնտեսական, հոգևոր և այլ կապերը, այնքան ավելի հզորանում ու խորանում
է մեծ հանրության աղնիվ զգացումը՝ սովետական մարդու համազգային հը-
պարտությունը։
ՍՄԿԿ XXV համագումարում, Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի.
Բրեժնևը շեշտեց. «Աշխատավորության, ամենից առաջ երիտասարդ սերնդի գի-
տակցության մեջ սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտեր-
նացիոնալիզմի գաղափարների, սովետների երկրի համար, մեր հայրենիքի
համար հպարտության գաղափարների, սոցիալիզմի նվաճումներին պաշտպան-
կանգնելու պատրաստակամության գաղափարների հաստատումը եղել և մնում
է կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը»։*

սահմանամերձ շրջաններում (Բաթումի, Օդեսա, Լենինգրադ, Իզմայիլ, Յալթա) թրև էին գալիս ժամանակակից լավագույն ինքնաթիռների ու շոգենավերի վրա, մի նպատակով— սողանք գտնել և սլկվել դեպի «արևմտյան քաղաքակրթությունը», վայելել «քաղցր կյանքը»:

Որքա՞ն միջոցներ, ժամանակ, ուժ են վատնել նրանք այդ նպատակին հասնելու համար. հատուկ ամսագրերի միջոցով սովորել են կառավարել «Մորավա» ինքնաթիռը, հեղուկ կողմնացույցը, մշակել են երթուղին, քարտեզով նախանշել անցնելիք Կերչ—Սինոպ (Թուրքիա) կուրսը, պատրաստել հատուկ մահակներ ու սեղմիչներ պարկերի համար, որոնցով պետք է սեղմեին մարդկանց կոկորդը, զրկեին գործելու ունակությունից (սև թելից գործված այդպիսի պարկ էին հենց հետևից գցել օդաչուի գլխին, երբ ինքնաթիռն արդեն օդում էր):

Այս ամենն արել էին, փոխանակ հենց այդ փողերով գնալու Միխայլովսկ՝ Պուշկինի մոտ, Օդեսա՝ «Պոտյոմկինի» հերոսների մոտ...

Որտեղի՞ց նրանց վեհ գաղափարներ և հոգեկան կայունություն: Ողորմելինե՞ր: Վատաբանել այն հայրենիքը, որ ձրի կրթություն է տվել և դեռ թոշակ վճարել նրանց:

Մենք տեսնում ենք, թե հանցագործներն ինչ են կուտակել: Ի՞նչ են կուտակում որոշ ծնողներ իրենց և իրենց զավակների համար: Մոտավորապես նույնը, միայն «բարի» նպատակով, իրենց որդիների ու դուստրերի երջանկության համար:

Ինչպիսի՜ կրքով են որոշ ծնողներ երեխաներին «խցկում» ինստիտուտները, ազատում տնային աշխատանքից, մոդայիկ հագցնում, կերակրում բժշկի խորհրդով ուսուցիչներ վարձում: Նյութական ներկա բարեկեցությունը հնարավորություն է ընձեռում այդ ամենն անելու: Եվ անում են, ուրիշներից ետ չմնալու, գերազանցելու քաղքենիական մոլուցքով: Մեզ միշտ պատվաստել են իրար թև ու թիկունք լինելու զգացումը— եղբայրական, ընկերական, ստեղծարար համագործակցությունը: Բայց արմունկներով գործել, դես ու դեն հրել և «մարդամեջ դուրս գալ», այս արդեն, ինչպես ասում են, այլ օպերայից է: Եվ ցավալի է տեսնել, թե ինչպես ոչ հիմար, աշխատավոր մարդիկ այս հատկությամբ են օժտում իրենց երեխաներին, չմտածելով հավանական դառը հետևանքների մասին: Այդ կոչվում է վա՜յ-կուլտուրա: Իսկ այդ «կուլտուրայով», ինչպես հայտնի է, վեհ գաղափարայնությամբ չես համակի: Գաղափարն է սերմանում կուլտուրան, անկախ այն բանից՝ մարդը բարձրագույն կրթություն ունի՞, թե՞ ոչ, ունի՞ փայլեցրած կահույք, թե՞ ոչ:

Կուլտուրան արգասիք չէ տանը գտնվող՝ քաղաքակրթության ընձեռած առարկաների և ոչ էլ կարդացած գրքերի և դիտված կինոնկարների քանակության: Այն արգասիք է մարդկային հոգու ազնիվ ավանդույթների պահպանման: Բայց այդ ավանդույթները երկնքից չեն ընկնում մանկան օրօցքի մեջ: Դրանք տալիս է հասարակությունը և, որքան այն հարուստ է, այնքան շռայլորեն են շնորհվում հոգևոր արժույթները:

Այն շենքի դիմաց, ուր երեք օր շարունակ դատական բաց պրոցես էր ընթանում, կա մի զբոսայգի, որի կենտրոնում, գրանիտյա ժայռին, ականջներով գլխարկը գլխին մի տղայի խորաքանդակ է: Տղան Վոլոդյա Դուբինն է՝ մարտիկ— Կերչի զավակ և Սովետական Միության քաղաքացի: Նա կյանքն է տվել հանուն հայրենիքի: Նա սիրում էր հայրենիքը՝ որպես Սովետական Միության կատարյալ քաղաքացի:

Հայրենիքի նկատմամբ ջերմ սիրո զգացումով մարդուն համակում է մեր առօրյա կյանքը՝ իր հաջողություններով ու հաղթանակներով, հոգսերով ու մեծ ճանապարհին ծագող դժվարություններով: Ահա ինչու երկրի յուրաքանչյուր առաջընթաց քայլ ուրախությամբ ու հպարտությամբ է տոգորում սովետական ժողովրդին, մղում նրան՝ առավել ակտիվ մասնակցելու նոր կյանքի կերտմանը:

Կոմերիտական № 1 տոմսը և ՀամԼԿԵՄ ոսկե պատվո նշանն ստանալիս ընկեր Բրեժնևն ասաց. «Մեր օրերի կոմերիտմիությունը կոմունիստական շինարարության ակտիվ, մարտական մասնակիցն է: Կոմերիտականներն ավյունով, նախաձեռնությամբ են աշխատում թե՛ ԿամԱՋ-ում, թե՛ ԲԱՄ-ում, թե՛ մեր ժամանակի տասնյակ ու հարյուրավոր ուրիշ մեծ ու փոքր ձեռնարկություններում և կառույցներում, մեր կոլտնտեսությունների ու սովխոզների անծայրածիր դաշտերում»:

Հայրենասիրությունը չի հանդուրժում ճոռոմախոսություն, անտարբերություն: Հակառակը, այն պահանջում է երկրին, ողջ աշխատավորությանը օգուտ բերող ակտիվ գործողություններ: Ահա թե ինչու սովետական մարդը չի կարող ապրել առանց հայրենիքի նկատմամբ տածած անկաշառ, անհաշվենկատ սիրո:

Հայրենասիրությունը սատարում է մարդկանց՝ կողմնորոշվելու հասարակական կյանքում, գտնելու իրենց տեղը ընդհանուր գործում, հասնելու նպատակին, հաղթահարելու դժվարությունները, որքան էլ դրանք մեծ լինեն: Համոզված գաղափարականը միշտ էլ պատրաստ է սխրանքի՝ հանուն սովետական հայրենիքի, անսահմանորեն նվիրված է կուսակցությանը, ժողովրդին:

Սիրել հայրենիքը՝ նշանակում է նրա պաշտպանության համար չխնայել ուժերը, ունակությունները, իսկ եթե հարկ լինի՝ նաև կյանքը: Սիրել հայրենիքը, մարդկանց, կյանքը, նշանակում է ատել այն ամենը, ինչ սպառնում է դրանք:

Կոմունիստական կուսակցությունը շատ բան է անում գաղափարական, բազմակողմանի զարգացած, ֆիզիկապես առողջ, բարոյապես ազնիվ երիտասարդության դաստիարակության համար: Սովետական մարդիկ նվիրաբերում են հայրենիքին այն ամենը, ինչ ունեն, ինչ ժառանգել են մեր նախորդների հարուստ կենսափորձից ու կուլտուրայից— ատելություն թշնամու և սեր մարդկության նկատմամբ:

Իրենց երկրի ջերմ հայրենասերներն են հայրենիքի սահմանները պաշտպանող սահմանապահները: Նրանք սիրով, խոր գիտակցությամբ են կատարում իրենց զինվորական պարտքը հարազատ երկրի, այն ամենի նկատմամբ, ինչ ստեղծել է ժողովուրդը, և միշտ էլ պատրաստ են կասեցնելու թշնամու սահմանախախտման փորձերը, անձնվիրությամբ պահպանելու մեր երկրի սահմանները: Նրանք գործով են արդարացնում այդ բարձր վստահությունը:

# ԱՐԺԵՔԱՎՈՐ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ

Բնակչության վերարտադրության և աշխա-
տանքային ռեսուրսների կազմավորման ու օգ-
տագործման պրոբլեմի գիտական մշակումը սո-
վետական տնտեսագիտության և սոցիալիստա-
կան պլանավորման առաջնահերթ խնդիրներից
է: Ճիշտ է, այդ պրոբլեմի բազմակողմանի ու-
սումնասիրությամբ զբաղվել ու զբաղվում են
մեր երկրի գիտահետազոտական տարբեր ինս-
տիտուտներ ու լաբորատորիաներ, ինչպես նաև
առանձին գիտնական-տնտեսագետներ և, հար-
կավ, մի շարք խնդիրներ արդեն լուծված են,
սակայն այժմ էլ կան վիճելի և չլուծված հար-
ցեր, որոնց մշակումն ունի տեսական ու գործ-
նական կարևոր նշանակություն:

Հայկական ՍՍՀ-ում այդ պրոբլեմով և դրա
առանձին հարցերով հիմնականում սկսել են
զբաղվել 60-ական թվականներից: Ինչ վերա-
բերում է հանրապետության աշխատանքային
ռեսուրսների գոյավորման և օգտագործման օ-
րինաչափությունների գիտական հետազոտմա-
նը՝ կապված նրա սոցիալ-տնտեսական և դե-
մոգրաֆիական առանձնահատկությունների,
ինչպես նաև ժողովրդական տնտեսության զար-
գացման հիմնական ուղղությունների հետ, ապա
այն նոր է կատարվում: Սոցիալ-տնտեսական
այդ կարևոր թեմային է նվիրված Վ. Ե. Խոջա-
բեկյանի Հայկական ՍՍՀ բնակչությունը և աշ-
խատանքային ռեսուրսների վերարտադրության
արդի պրոբլեմները ծավալուն մենագրությունը
(ՀՍՍՀ ԳԱ հրատ., Ե., 1976 թ.):

Աշխատության առաջին բաժնում քննարկվում
են բնակչության, իսկ երկրորդում՝ աշխատան-
քային ռեսուրսների վերարտադրության օրինա-
չափությունները: Հասկանալի է, որ աշխատան-
քային ռեսուրսների գոյավորման օրինաչափու-
թյունների հետազոտությունը հնարավոր չէ ա-
ռանց բնակչության վերարտադրության հար-
ցերի մշակման:

Բնակչության վերարտադրությանը վերաբե-
րող վիճակագրական հարուստ տվյալների և
հեղինակի մշակած նյութերի հիման վրա վեր-
լուծվում են բնակչության բնական և մեխանի-
կական շարժի հիմնական տենդենցները, բա-
ցահայտվում այդ գործոնների դրսևորման օրի-
նաչափություններն ու առանձնահատկություն-
ները Հայկական ՍՍՀ-ում: Բնակչության ծնըն-
դաբերության, մահացության և մեխանիկական
շարժի հարցերը մանրամասնորեն քննարկվում
են պատմական, սոցիալ-տնտեսական, բնական,
ազգային և այլ գործոնների փոխկապակցու-
թյամբ:

Հետազոտությունը հեղինակին հնարավորու-
թյուն է ընձեռում հանգելու այն գիտական հե-
տևությանը, որ հասարակության զարգացման և
գիտատեխնիկական առաջընթացի այժմյան
պայմաններում բնակչության բնական շարժը
պայմանավորող գործոններ են դառնում հասա-
րակական արտադրություն գնացող երիտասար-
դության բարձր կրթական մակարդակը և մաս-
նագիտական պատրաստականությունը, հան-
րային տնտեսության մեջ զբաղված կանանց
թվի անշեղ մեծացումը, բնակչության բժշկա-
կան սպասարկման բարելավումը և մահացու-
թյան կրճատումը, աճող սերնդի դաստիարա-
կության մակարդակի բարձրացումը և այլն:

Մենագրության մեջ ՀՍՍՀ բնակչության վե-
րարտադրության օրինաչափությունների և ա-
պագայում դրանց դրսևորումների մանրազնին
ուսումնասիրման հիման վրա կանխորոշվում են
դրա աճի հիմնական տենդենցները (մինչև
2000 թ.): Նման հաշվարկ կարող էր կատար-
վել միայն տեսական և մեթոդական հիմքի
վրա: Եվ հեղինակը արծարծել է ո՛չ միայն մի
շարք տեսական հարցեր, այլև ապագայում կան-
խատեսվող օրինաչափությունների բացահայտ-
մամբ կատարել գիտական լուծումներ: Տե-



սական, մեթոդական բնույթի հարցադրումներ
և ընդհանրացումներ կատարելիս, հեղինակը
լայնորեն կիրառում է քննական վերլուծական
մեթոդը: Այս կապակցությամբ անդրադառնալով
դեմոգրաֆիական քաղաքականության հարցին,
նա քննադատում է այն տնտեսագետներին,
ովքեր դեմոգրաֆիական քաղաքականության
էությունը հանգեցնում են միայն բնակչության
ծնունդի կարգավորմանը: Նրա կարծիքով, դե-
մոգրաֆիական քաղաքականությունը, ինչ-որ
չափով նպաստելով ծննդաբերության օպտի-
մալացման պրոցեսին և մահացությունը հաս-
ցնելով նվազագույնի, պետք է սատարի նաև
բնակչության տերիտորիալ, սոցիալական, կըր-
թական, պրոֆեսիոնալ տեղաշարժերի կարգա-
վորմանը:

Ուշադրության է արժանի այն հետևությունը,
որ հասարակությունը պետք է ներգործի ծնըն-
դաբերության օպտիմալացման պրոցեսին, ուս-
տի նյութական խրախուսանքն իր տարբեր ձե-
վերով չպետք է կիրառել միայն այնտեղ, որտեղ
ծննդաբերությունը ցածր է հասարակության
համար նորմալ համարվող մակարդակից (ինչ-
պես կարծում են որոշ տնտեսագետներ): Ըստ
որում, շատ միութենական հանրապետություն-
ներում բնակչությունը բազմազգ է, և կանայք
ունեն տարբեր պտղաբերություն, նպաստը ո՛չ
միայն ծնունդի բարձրացման պայման է, այլև դրա
հետևանքը, որը կհանգեցնի, ինչպես ճիշտ
նկատում են որոշ դեմոգրաֆներ, հանրապե-
տությունների բնակչության կենսամակարդակի
տարբերության մեծացման:

Շարադրելով հեռանկարում բնակչության ա-
ճը հաշվարկելու գոյություն ունեցող մեթոդների
էությունը և բացահայտելով դրանց դրական ու
բացասական կողմերը, հեղինակն ստեղծագոր-
ծական առումով կիրառում է առավել ընդունելի
մեթոդներ: Անհրաժեշտ է շեշտել, որ այդ մե-
թոդների ճշտությունն ապացուցվում է. օրի-
նակ, հեղինակի կատարած հաշվարկների մի
շարք արդյունքները համընկնում են 1970 թ.
մարդահամարի փաստացի տվյալներին:

ՀՍՍՀ բնակչության վերարտադրությունն ա-
պահովող սոցիալ-տնտեսական ու դեմոգրա-
ֆիական գործոնների բացահայտման և դրանց
օրինաչափությունների դրսևորման հիման վրա,
երկարատև հեռանկարի (1976—2000 թթ.) յու-
րաքանչյուր տարվա համար հաշվարկված է
հանրապետության բնակչության թիվն ըստ սե-
ռի և տարիքի:

Հետազոտության արդյունքները հեղինակին
բերել են այն եզրակացության, որ ՀՍՍՀ-ում
առաջիկայում ևս պահպանվելու են բնակչու-
թյան աճի բարձր տեմպերը: Միաժամանակ այդ
պրոցեսը կուղեկցվի անչափահասների տեսա-

կարար կշռի բարձրացմամբ: Դա նշանակում է,
որ դարավերջին Հայկական ՍՍՀ բնակչությունը
կմոտենա «ծերացման»: Բնակչության թվի աճը
և նրա տարիքային կազմի փոփոխությունները
տեղի կունենան որոշ տատանումներով: Այս
կապակցությամբ աշխատության մեջ քննարկ-
վում են բնակչության ծերացումը որոշող ցու-
ցանիշները:

Տեսական և գործնական հետաքրքրություն է
ներկայացնում աշխատունակ բնակչության վե-
րարտադրության վերլուծությունն ըստ գործոն-
ների, սեռա-տարիքային կազմի, քաղաքի և
գյուղի: Ամեն մի կոնկրետ պատմական ժամա-
նակաշրջանում տնտեսական շրջանի բնակչու-
թյան աճի տեմպերն զգալիորեն տարբերվում
են նրա աշխատունակ մասի աճի տեմպերից:
Դա պայմանավորում է ժամանակի մեջ աշխա-
տանքային տարիքի բնակչության, ինչպես նաև
բնակչության կազմում աշխատանքային ռե-
սուրսների որոշ փոփոխությունները: Այդ օրի-
նաչափությունների բացահայտումը կարևոր
նշանակություն ունի տնտեսական շրջանի աշ-
խատանքային ռեսուրսների ձևավորման պրոբ-
լեմի գիտականորեն հիմնավորված լուծման,
հասարակական արտադրության զարգացման օ-
րինաչափությունների պրոգնոզավորման, բնակ-
չության մեկ շնչին ընկնող ազգային եկամտի
արտադրության չափերի, կուտակման և սպառ-
ման հարաբերակցության որոշման համար և
այլն:

Այդ կապակցությամբ հեղինակն իրավացիո-
րեն քննադատում է տնտեսագիտական գրա-
կանության մեջ և պլանավորման պրակտիկա-
յում գոյություն ունեցող այն սխալ կողմնորո-
շումը, երբ ռեգիոնի ժողովրդական տնտեսու-
թյունը պլանավորելիս ելակետ է ընդունվում
միայն բնակչության ընդհանուր թիվը: Նա հա-
մամիտ չէ այն հարցադրմանը, ըստ որի, ժողո-
վըրդական տնտեսության մեջ աշխատողների
թվի աճը պետք է համապատասխանի բնակչու-
թյան աճին: Աշխատողների թվի աճը կապված
է աշխատանքային տարիքի բնակչության և
տնային ու օժանդակ տնտեսություններում
զբաղվածների թվի հետ: Հարկավոր է նկատի
ունենալ նաև, որ երբեմն նույն անձը միաժա-
մանակ զբաղեցնում է երկու աշխատատեղ, ուս-
տի աշխատանքային ռեսուրսների հաշվեկշիռը
կազմելիս պետք է ազատվել այդ կրկնահաշ-
վարկից:

Ելնելով հանրապետության սոցիալ-տնտեսա-
կան զարգացման հնարավորություններից, հե-
ղինակը հաշվարկում է ՀՍՍՀ աշխատանքային
տարիքի բնակչության փոփոխություններն ըստ
սեռա-տարիքային կազմի մինչև 2000 թվակա-
նը: Ուշադրության արժանի է և այն, որ նա

Աշխատուժը և աշխատանքային ռեսուրսները միմյանց հետ կարելի է համեմատել միայն քանակական առումով: Աշխատուժը քանակական իմաստով դիտվում է երկու առումով՝ պոտենցիալ, որն աշխատունակությամբ օժտված մարդկանց ամբողջությունն է և իրական կամ գործող, որն աշխատող մարդկանց ամբողջությունն է: Այս վերջին հասկացությունը, մեր կարծիքով, նույնական է աշխատանքային ռեսուրսներ հասկացությանը:

Հեղինակը հասարակական աշխատանքային ռեսուրսների մի մասն է համարում նաև աշխատանքային տարիքում ուսման համակարգի ցանկացած ձևում ընդգրկված սովորողներին (էջ 141): Անկասկած, նրանք, ովքեր աշխատանքն ու ուսումը համատեղում են, իսկապես որ համարվում են աշխատանքային ռեսուրս, իսկ մնացած սովորողներին աշխատանքային ռեսուրսների կազմի մեջ մտցնելը, մեր կարծիքով, ճիշտ չէ:

Աշխատության 74-րդ էջում կարդում ենք. «Կենսաթոշակը... կյանքի որոշ տարիք թևակոխած մարդկանց՝ հանրային տնտեսությունում հավելյալ աշխատանքով ստեղծված հավելյալ արդյունքի կամ հավելյալ աշխատաժամանակի ընթացքում մատուցած ծառայությունների դիմաց համապատասխան փոխհատուցում» է: Այս տեսակետի հետ չի կարելի համաձայնել, որովհետև ըստ Մարքսի՝ հասարակությունը յուրաքանչյուր տարի իր արտադրած արդյունքի մի մասն առանձնացնում է անաշխատունակների և անաշխատունակ դարձած անդամների համար: Իսկ դա հավելյալ արդյունքի կամ հավելյալ ծառայության դիմաց վճար կամ փոխհատուցում չէ: Հասարակությունը միշտ պարտավոր է պահել իր անդամներին:

Վ. Ե. Խոջաբեկյանի հրատարակած մենագրությունը բովանդակալից, տեսական բարձր մակարդակով, հարուստ ու գրագետ լեզվով գրված գործնական նշանակություն ունեցող ուշագրավ հետազոտություն է: Այն օգտակար կլինի պլանավորող և վիճակագրական մարմինների, տնտեսագիտական պրոֆիլի դասախոսների և ուսանողության, ինչպես նաև ընթերցող լայն զանգվածների համար:

Վ. Ս. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ
Տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր




Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 04040 Պատվեր 1179 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.100 Գինը 20 կոպ. Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 16/V-1977 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ավ. Իսահակյան փող. № 28:*




# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի աշխատություններ: *«Հայաստան» հրատ., 1976:*

Բնագիտության և տեխնիկայի պատմությունը Հայաստանում, պր. 6: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Մ. ՄԽԻԹԱՐՅԱՆ— 19-րդ դ. երկրորդ կեսի արևելահայ մամուլի պատմությունից: *Ե., ԳԱ հրատ., 1976:*

Հայ մշակույթի նշանավոր գործիչներ: *ԵՊՀ հրատ., 1976:*

Մ. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ— Նաեսեներ և Հայաստանը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ— Արդյունավետություն, կառավարում, որակ: *«Հայաստան» հրատ., 1977:*

ԳԱՅ— Քաղաքացիական կռիվների բոցերում: *«Հայաստան» հրատ., 1977:*

ՍՓՈՔ ԲԵՆՋԱՄԻՆ— Երեխան և նրա խնամքը: *«Հայաստան» հրատ., 1977:*

Կ. ԴԱՆԻԵԼՅԱՆ— Գրական մշակներ: *Ե., «Սովետական գրող», 1976:*

Հ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Արիության հեռավոր ճանապարհին: *«Հայաստան» հրատ., 1977:*

Ա. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ— Մուտացիաները և մարդու ժառանգականությունը: *«Հայաստան» հրատ., 1977:*

**XXV съезд КПСС и задачи кафедр общественных наук.** М., Политиздат, 1977.

**Ленин в Октябрьские дни 1917 года.** Сборник воспоминаний. М., Политиздат, 1977.

Е. **КОКШАРОВА—Ленин в Совнаркоме в 1917 году** М., Политиздат, 1977.

Г. **ЧИЧЕРИН—Ленин и внешняя политика.** М., Политиздат, 1977.

А. **ШОТМАН—Ленин в подполье.** (Июль-октябрь 1917 года). М., Политиздат, 1977.

В. **СТЕПАНОВ—Социализм—общество подлинной свободы.** Серия «Развитой социализм». М., Политиздат, 1977.

**О религии и церкви.** Сборник высказываний классиков марксизма-ленинизма, документов КПСС и Советского государства. М., Политиздат, 1977.

Н. **ПИЛИПЕНКО—Совершенствование профессиональной подготовки и воспитания молодых рабочих.** М., «Экономика», 1977.

**Улучшение использования основных фондов предприятий.** М., «Экономика», 1977.

А. **КОМАРОВСКИЙ—Планирование снижения металлоемкости промышленной продукции.** М., «Экономика, 1977.

**Экономические проблемы национального использования земли.** М., «Экономика», 1977.

Э. **САГАЙДАК—Закупочные цены и экономика колхоза.** М., «Экономика», 1977.

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՏՐԱՍՏՎԱԾ Է ՊՈԼԻՄԵՐՆԵՐԻՑ

Բաշկիրական ԻՍՍՀ-ի Բիժբուլյակի «Գյուղտնտեխնիկա» շրջանային միավորումում բացվել է նոր արտադրամաս, ուր պոլիէթիլենային արտադրության թափոններից պատրաստում են տրակտորների, ավտոմեքենաների, շարքացանների ավելի քան 100 տեսակի պահեստամասեր։ Հումքը մատակարարում են հանրապետության նավթաքիմիական ձեռնարկությունների կոլեկտիվները։ Պոլիմերային պահեստամասերը ոչնչով չեն զիջում մետաղականին, հաճախ ավելի հուսալի են ու երկարակյաց։ Նորույթն ավելի էժան է և հնարավորություն է ընձեռում տնտեսելու տոննաներով մետաղ։

## ԻՆՖՐԱԿԱՐՄԻՐ ՃԱՌԱԳԱՅԹՆԵՐԸ ԲՈՒԺՈՒՄ ԵՆ ԱՅՐՎԱԾՔՆԵՐԸ

Շվեդ գիտնականները մշակել են թերապիայի նոր մեթոդ ուժեղ այրվածքները բուժելու համար։ Բուժամիջոցը հիվանդի գլխավերևում, առաստաղին ամրացված ինֆրակարմիր ջերմաճառագայթների աղբյուրն է։ Հիվանդն ինքը կարող է կարգավորել ջերմաճառագայթների ուժը։ Այդպիսի բուժումը հնարավորություն է ընձեռում պահպանելու հիվանդի քաշը։ Ինֆրակարմիր ջերմաճառագայթներով այրվածքների բուժման առաջին փորձերն ավարտվել են հաջողությամբ։

## ՊԱՀՊԱՆԵՆՔ ԱՆՏԱՌԱՓԱՅՏԸ

Անտառը կարելի է տնտեսել, եթե արդյունաբերական ձեռնարկություններում արտադրանքի փաթեթավորման համար կիրառվեն ոչ թե սոսկ մեկ անգամ օգտագործվող փայտե տարաները, այլ հավաքովի-քանդովի արկղեր, որոնք կարելի է բազմիցս օգտագործել։ Դրանց պատերը մամլված փայտե թեփ է։ Նման տարաների ներդրմամբ երկիրը կտնտեսի մոտ 35 հազար մ$^3$ գործածելի փայտ և յուրաքանչյուր մեկ միլիոն արկղից՝ մեկ միլիոն ռուբլի։

## ԱՂԲԸ ԳՆԱՆԻ ՏԱԿ

Եվրոպական մի շարք երկրների մասնագետներ հաշվել են, որ արդյունաբերական արտադրության ներկա ծավալների դեպքում 10—15 տարի հետո արդեն դժվար կլինի տեղ գտնել արդյունաբերական ու կենցաղային թափոնների համար։ Կան, իհարկե, աղբայրիչ գործարաններ, սակայն դրանք ի վիճակի չեն կարգավորելու արագ աճող «վառելիքի» հոսքը։ Այդ իսկ պատճառով այժմ քաղաքամերձ կիրճերում և ցածրավայրերում առանձնացվում են աղբահորեր, ուր թափոնները ճզմում են մեքենաներով, ապա ծածկում՝ հողով։ Հետագայում այդպիսի վայրերը կծածկվեն այգիներով ու պուրակներով։

«Կոնե-Յուրյա» ֆիննական ֆիրման թողարկել է 30 տոննանոց դիզելային «Մյուլ-Յումբո» մակնիշի աղբաճզմիչ գլան։ Մեքենան միաժամանակ բուլդոզերի թևերով հարթեցնում է աղբը, գրտնակի ատամներով կտրատում մինչև միատարր զանգված դառնալը։

## ՎԱՐԴԱՅՈՒՂԸ ԱՍԹՄԱՅԻ ԴԵՄ

Ասթման լուրջ հիվանդություն է։ Սակայն մինչև օրս դրա դեմ պայքարելու արդյունավետ միջոց չկա։ Ուստի, ուրախալի է բուլղարացի քիմիկոսների՝ բժշկական բարձրագույն ինստիտուտի աշխատակիցների, նորամուծությունը։ Փորձերի միջոցով նրանք ապացուցել են, որ վարդայուղի լուծույթները կարող են ո՛չ միայն կանխել բրոնխիտային ասթմայի նոպան, այլև, ակտիվ ազդելով ներքին մեխանիզմի վրա, իմունիտետ մշակել այդ հիվանդության դեմ։